# „ԽՈԶՈՒԿԸ“



Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

«Խոզուկը» կախելու իրավունքը Սամվելին էր տրված։ Թեև նա առաջադիմության մեջ չէր փայլում, բայց շատ թե քիչ գործունյա էր և, մանավանդ, ջոկատորհրդի անդամ։

Ամեն օր, հենց որ հնչում էր մեծ դասամիջոցի զանգը, նա մեկիկ-մեկիկ ստուգում էր դասընկերների ձեռքերը, օրագրերը, սեղան-նստարանները և, վա՜յ նրան՝ ով իրեն չէր արդարացնի։ Սամվելն իսկույն վրա կպրծներ։

— Մի նստարանիդ նայիր, հենց որ աղբանոցից հանես...

— Էս ի՞նչ է, չլինի՞ ցեխոտ ոտներով հավեր են պտտվել օրագրիդ մեջ։

— Հիմա էլ եղունգներդ ես երկարացնում, հա՞, դե երևի խոզերի պատվեր ես ընդունել։— Հեգնանքով կասեր նա և նույն րոպեին ճեպընթաց կիջներ պիոներական սենյակ. «խոզուկն» առած վազեվազ ետ կդառնար ու հերթով կախ կտար փնթիների նստարաններից։

«Խոզուկի» պատմությունն այսպես սկսվեց։ Դեռ ուսումնական տարվա սկզբին, երբ քննվում էր դասարանի սանիտարական վիճակը, որոշում կայացվեց ստեղծել թղթե մի «խոզուկ» և նրանով «պարգևատրել» օրվա փնթի հերոսներին։ Բայց «խոզուկի» լույս աշխարհ գալը շատերի սրտով չէր։ Միայն Սամվելն էր, որ մի առանձին հաճույք էր զգում։ Չէ՞ որ «խոզուկը» բավականին բարձրացրել էր իր հեղինակությունը։ Դասընկերները սիրալիր էին և նեղն ընկած տեղը, բացի Աշոտից, հուշում էին, շատերը՝ նույնիսկ քաշվում ու փախչում... Եվ ամեն անգամ, երբ նա «խոզուկը» կախ էր տալիս որևէ մեկի նստարանից, ասես պայծառանում էր։

* * *

Տարին կես էր դառնում։ «Խոզուկն» այժմ դեպքից-դեպք էր այցելում երեխաներին։ Այդ երևույթը ամենից շատ ուրախացրել էր Անթառամ տատիկին։ Դե հա, քիչ բան չէ՞ր։ Ախր, չկար դասամիջոց, որ նա նրա չմտներ։ Էլ թղթի կտորտանք, էլ հացի փշրանք, էլ կավճի մանրուք... Ի՜նչ ասես չէր հավաքում դասարանից։ Իսկ հիմա ուրիշ էր։ Երեխաները ոչ միայն հարգում էին Անթառամ տատիկի աշխատանքը, այլև իրենք էին մաքրում դասասենյակը և քիչ էր պատահում, որ միջանցքի ցուցափեղկում դասարանը կարմիր դրոշակ չստանար։

Միայն Սամվելն էր դժգոհ։ Նա այնպես էր սովորել «խոզուկին», որ առանց նրան յոլա գնալ չէր կարողանում։ Սիրում էր «խոզուկի» հետ հպարտ-հպարտ մտնել դասարան և կախել մեկի ու մեկի նստարանից։ Եվ հիմա տխրում էր, որ փնթիները չքացել են։ Նա տեսնում էր, որ ընկերներից շատերը այլևս չեն ծիծաղում, ինչպես առաջ, և սկսել են երես թեքել իրենից։ «Ոչինչ, կկախեմ, այսօր անպայման կկախեմ», միշտ վճռում էր նա և աչքերը չորս արած՝ փնտրում էր դես ու դեն, որ մի բան գտնի։

Նա ամենից շատ քեն ուներ Աշոտի վրա։ «Ձեռ հուշում հա՞, բայց դեռ կտեսնենք, լողացի մեկը»— ինքն իրեն ասում էր Սամվելը, բայց հակառակի նման թղթի մի անիծյալ կտոր չէր կարողանում գտնել նրա դարակներում, որ հախից գար։

Մի անգամ մեծ դասամիջոցին, երբ բոլոր երեխաները դրսում էին, Սամվելը մտավ դասարան։ Նրա ուշքն ու միտքը Աշոտի նստարանն էր։ Նա մի շնչով հասավ նստարանին և տանձի ծառ տեսած արջուկի նման, սկսեց պտտվել նրա շուրջը։ Սակայն իզուր...

Հանկարծ մի փայլուն մտքից Սամվելի թթված դեմքը միանգամից բացվեց։ Առանց ժամանակ կորցնելու, նա կավճամանից մի կտոր կավիճ վերցրեց, խզմզեց Աշոտի նստարանը, նրա շուրջը ճմրթված թղթեր շաղ տվեց և աննկատ ծլկեց դասարանից։ Նա այնքան շրջեց միջանցքում, մինչև մի քանի աշակերտ մտան դասարան։ Նրանց հետևից հևալով ներս ընկավ Սամվելը։

— Պա՛հ, մի տեսեք, էն ում նստարանն է,— դեմքին զարմանքի կեղծ արտահայտություն տալով գոռաց նա։

— Աշոտինն է, բայց նա ախր... աչքերին չհավատալով կմկմացին դասընկերները։

— Էլ ինչ «ախր»։ Էդ էլ ձեր գերազանցիկը,— ասաց Սամվելը և առանց դանդաղելու, թռավ դեպի պիոներական սենյակ։ Քիչ հետո նա շնչակտուր ներս ընկավ և «խոզուկը» կախեց Աշոտի նստարանից։

Բոլորը լուռ էին, բայց լռությունը խեղդում էր ասես Սամվելին։ «Էս ինչու՞ չեն ծիծաղում...»

Հանկարծ ներս մտավ Աշոտը և, բանից անտեղյակ, մոտեցավ իր նստարանին։ Բայց «խոզուկն» ու կեղտոտված նստարանը տեսնելով՝ շփոթված արձանացավ տեղում։

— Այս ի՞նչ բան է, մի՞թե ես եմ արել,— կաս-



5833-59
8337-Կ. Հ.
digitised by A.R.A.R.@

կածանքով ասաց նա,— չէ, չէ, տղերք, ես չեմ արել ավելին խոսք...

— Մի գրան տեսե՛ք, բա ուրիշ ո՞վ պիտի աներ,— վրա տվեց Սամվելը և մյուսներին գրգռելու նպատակով ավելացրեց,— նախանձի մեկն ես էլի, չուզեցիր, որ էսօր էլ դրոշակ ստանանք։

— Ձե՞ր հավատում հա՞, ահա մատներս, եթե կավճոտ են, ուրեմն ես եմ արել։

Բայց որքան էլ արդարանար Աշոտը, միևնույն էր, նրա նստարանը կեղտոտ էր։

Աշոտը մաքրեց նստարանը և լուռ ու մունջ կախեց գլուխը։ «Տեսնես ո՞վ է արել...»

* * *

Անցել էր մի քանի շաբաթ։ Սամվելը առաջվա պես եռանդով հետևում էր դասարանի կարգ ու կանոնին։ Սակայն ինչպես ասում են. «Ուրիշի աչքի մազը տեսնում էր, իսկ իր աչքի գերանը չէր տեսնում»։ Եթե գնալով մյուսների եղունգները կարճանում էին, նրանն ընդհակառակը, երկարում էին, եթե մյուսների «երեքները» «հինգեր» էին դառնում, նրանը՝ «երկուսներ», եթե մյուսների նստարանները փայլփլում էին, նրանը՝ սկսել էր կեղտոտվել։ Դե ո՞վ կարող էր նրա վրա խոսել։ «Խոզուկ» կախողը ինքն էր, ուրեմն՝ վե՛րջ։

Սակայն երեխաները տեսնում էին ամեն ինչ և արդեն փսփսում էին իրար մեջ։

Մի օր, էլի երկար դասամիջոցին, Սամվելը քիթը կախած ստուգում էր նստարանները։ Բայց այսօր էլ կարծես նրա բախտը չէր ժպտում։ Մնում էր միայն մի նստարան։ Նա բոլոր մեկ կռացավ, գլուխը խոթեց դարակը և սկսեց քանդքանել։

— Ո՜ւխ վերջապե՛ս,— դեռ քիթը դարակի մեջ՝ ճչաց նա և դուրս բերեց կոպեկանոցի չափ թղթե մի կտոր։

— Ը՛հը՛, տեսե՛ք, տեսե՛ք,— իր մեծ հայտնագործությունից ոգևորված բացականչեց Սամվելը և այն է՝ պատրաստվում էր գնալ «խոզուկի» հետևից, երբ դասընկերները օղակեցին նրան։

— Ո՞ր,— ասաց տղաներից մեկը,— բա քոնը ինչի չես տեսնում։

— Արի, արի դանակներին նայիր, թե չէ շատ ես մեջ ընկել,— Սամվելի դարակից հանած թղթերի կտորտանքը սեղանին դիզելով, ասաց մեկ ուրիշը։

— Բա նստարանի փոշին, պա՜հ, պա՜հ,— վրա տվեց երրորդը և փոշու վրա մատով գրեց՝ «խոզուկ»։

— Ամոթ չլինի հարցնելը, իսկ այս ագռավի ճանկերն ինչու՞ ես պահում, չլինի՞ որոշել ես ճահիճներից գորտեր փախցնել,— զվարճալից դեմքը ծամածռելով հեգնեց աղջիկներից մեկը։

Հավաքվածները փռթկացին։

— Ախր, էլ ու՞ր ենք սպասում է, «խոզուկը» բերենք և, վերջ...

— «Խոզու՛կը», «խոզու՛կը»— ձայն տվեցին այս ու այն կողմից։

Սամվելը, որ այդպիսի հարվածի չէր սպասում, ակնապիշ սրան-նրան էր նայում և չէր իմանում՝ ինչ անի։ Ծնկներում այլևս ուժ չզգալով, նա թրմփաց նստարանին։ Աչքերի առաջ ասես մթնում էր, դեմքը՝ քթից սկսած մինչև ականջակոթերը, սկսել էր կրակվել։ Այդ պահին նրա սրտից ասես մի բան պոկվեց ու զարկվեց կրծքավանդակին։ Չգիտես՝ ամոթի զգացումի՞ց էր դա, թե՞ «խոզուկն» ընդմիշտ կորցնելու վախից...

Քիչ հետո մեծ հանդիսավորությամբ «խոզուկը» կախեցին Սամվելի նստարանից։

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ





digitised by A.R.A.R.@



# ԱՇՈՒՆ

Ռ. ՏՈՆՅԱՆ

Իմ խշխշան աշուն,
Իմ զարդարված քույրիկ,
Կատակում ես քնքուշ,
Ժպտում հազար գույնի:

Թռչկոտում ես նախշուն
Տերևներիդ խաղով.
Գոգնոցիդ մեջ խշշուն
Լցրած անուշ խաղող:

Փփսում ես թաքուն,
Հետո թեթև սուլում.
Պատուհանն ես թակում
Տերևներով սիրուն:

Իմ կարմրաթուշ աշուն,
Դու իմ բարի քույրիկ,
Սիրում եմ քո քնքուշ
Ժպիտն հազար գույնի:

Երբ ծառերը՝ կարմիր
Խնձորներ են թափում,
Առվակի հետ դու միշտ
Նրանք ինձ ես նամփում:

Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Ինչու՞, երբ ուզում ես, որ մի բան լավ լինի, հաճախ վատ է ստացվում: Օրինակ, իմ բոլոր գիտական ձեռնարկումները միշտ անսպասելի ընթացք են ստանում:

Վերցնենք հենց այսօրվա դեպքը:

Դպրոցից համարյա վազեվազ հասա տուն և ուզեցի անմիջապես անցնեմ այն հետաքրքիր փորձին, որի մասին դպրոցում պատմել էր մեր ֆիզիկայի ուսուցիչը:

Վերցրի մի լրագիր և դեմ արի վառարանի պատին: Ընկեր Գևորգյանն ասում էր, որ պատը պիտի անպայման տաք լինի, որպեսզի թուղթը լավ չորանա: Ապա հագուստի խոզանակով սկսեցի շփել: Լրագիրն անմիջապես էլեկտրական լիցք ստացավ և կպավ պատին:

— Տատի՛, ուզու՞մ ես վախեցնեմ քեզ:

— Մի՛ սրա՛ն տես,— անմիջապես բորբոքվեց տատիկը,— իր պստիկ ուղեղով ինձ ձեռ է առնում:

— Չե՞ս հավատում, արի հայելու մոտ, որ ինքդ էլ համոզվես...

Եվ երբ տատիկը մոտեցավ հայելուն, ես զգուշությամբ պոկեցի լրագիրը, բարձրացա աթոռին, պահեցի տատիկի գլխավերևը: Տատիկի մազերը անմիջապես բիզ-բիզ կանգնեցին: Ծիծաղելի էր:



digitised by A.R.A.R.@

Ռ. ՄԵԼԻՔ-ՓԱՇԱԿՅԱՆ

# Բախտս նորից չբերեց



Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ

— Տեսնու՞մ ես, վախից ոնց ես փչաքաղվել,— ասացի ես:

— Ես ի՞նչ օյին բերիր գլխիս,— զարմացավ տատիկը:

Իսկ Տիգրանիկը նույնիսկ վախեցավ, բայց համոզվելով, որ տատիկին վտանգ չի սպառնում, ինքն էլ սկսեց ծիծաղել:

Հետո ես բերեցի մեր պղնձյա մատուցարանը և դրեցի չորս բաժակի վրա, որպեսզի էլեկտրական լիցքը չհոսի: Մի քանի անգամ լրագիրը քսեցի մատուցարանին և լիցքավորեցի: Մնում էր ստուգել փորձի երկրորդ մասը: Ընկեր Գևորգյանը զգուշացրեց, որ եթե մատը մոտեցնես մատուցարանին, ապա կայծ կառաջանա և ասեղի պես կծակի: Այդ ձևով կարելի է դաստիարակել գող փիսիկին կամ տնային քոթոթին: Մենք քոթոթ չունենք, դրա համար էլ ես ու Տիգրանիկը որոշեցինք փիսիկին դաստիարակել: Կես ժամ մահճակալների տակ փնտրեցինք: Վերջապես գտանք ու մոտեցրինք մատուցարանին, որի վրա նախօրոք մի պատառ միս էինք դրել: Բայց փիսիկը վախվխելով նայեց տատիկին, ապա անտարբեր տեսքով նայեց մատուցարանի կողքին:

Ես սկսեցի փաղաքշել նրան, մոտեցրի միսը ու ետ քաշվեցի: Նա հոտոտեց ու առաջ բերեց քիթը... մեկ էլ այնպիսի թռիչք գործեց ու փռշտաց, որ մատուցարանը ընկավ աթոռից. չորս բաժակն էլ ջարդ ու փշուր եղան:

Ահա և բոլորը:

Հայրիկն ասաց, որ, ճիշտ է, մեծ գիտնականները իրենց փորձերի համար կենդանիներ են օգտագործել, բայց ես դեռ գիտնական չեմ: Իսկ տատիկն ավելացրեց, որ, եթե ամեն մի դատարկ փորձի համար չորս բաժակ զոհեմ, ապա շատ շուտով ամբողջ տունը կքանդեմ:

Չէ, բախտս նորից չբերեց...

digitised by A.R.A.R.@

# Արբանյակը Այգեստանում*)

ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## ՍՏԱՐՏ

Ի՜նչ ձեռքեր ունի Օնիկը, ուղղակի ոսկի։ Ահա նա արբանյակի ալյումինե գունդը փայլեցնում է մահուդով։ Այնպե՜ս է փայլում արբանյակը, այնպե՜ս, որ մարագի կիսամթում ուղղակի շողշողում է, բայց Օնիկը դժգոհ էր դեռ։

— Պետք լավ փայլի, հայելու նման անդրադարձնի ամեն ինչ, որ երկնքով թռչելիս աստղի պես շողա,— ասում է նա Արամին, որ նրա ոտքերի մոտ նստած աչք չի կտրում արբանյակից։

Վարազն ու մյուս տղաները դրսում են, երկաթե սյան մոտ։ Նրանք էլ հրթիռն են հղկել, փայլեցրել։ Հրթիռի մի ծայրը թաղված է հողի մեջ, վերևի մասը թեքված է մարագի կտուրին և երկաթալարով կապված տանձենու ճյուղերին։

Հրթիռ... Տղաները հրթիռ են անվանում երկաթե սյանը, բայց այդ հրթիռը օդ չի բարձրանալու։ Ավելի ճիշտ կլիներ թնդանոթ անունը տալ երկաթե խողովակին, որովհետև այն թնդանոթի դեր պետք է խաղար միայն։ Արբանյակը նրա միջով պիտի սուրար վեր, պոկվեր թնդանոթի փողից ու նետվեր երկինք։ Երեխաներն այնքան էին վստահ այդ բանին և այնքան ոգևորված, որ վերջին գիշերներին գրեթե չէին քնում։ Հանաք բան չի, նրանք տիեզերքում կունենային իրենց սեփական արբանյակը։ Նրանց մասին կգրեին թերթերում ու կասեին. «Սովետական չորրորդ արբանյակը բաց է թողնված Երևանի Այգեստան թաղամասից»։ Հետո կգրեին բոլորի անունները՝ Օնիկ, Վարազ, Աշոտ, Շահեն, Գեղամ և Արամ։ Մնացած երեխաները, որոնք այս կամ այն ձևով օգնել էին նրանց, մի ամբողջ ամիս զրկվել պաղպաղակից ու աղի-քաղցրից, պետք է բավարարվեին նրանով միայն, որ ապրում են այն թաղամասում, որտեղից նետվել է արբանյակը։ Դա էլ քիչ բան չէ։ Վարազն ասում էր, որ պարծենալու իրավունք կստանան նաև ամբողջ քաղաքի երեխաները. չէ՞ որ արբանյակն արձակվելու է Երևանում։

Ավետիք պապն էլ էր պարծենում։ Պարծենում էր, որ այդքան շնորհքով երեխաներ կան, որ նրանք իր այգու մարագում են պատրաստում արբանյակը, որ ինքն էլ է մասնակից այդ գործին։

Վերջապես մարագից դուրս եկավ Օնիկը՝ արբանյակի շողշողուն գունդը ձեռքին։ Նա արդեն ամրացրել էր անտենաները և գնդի ճակատին, ալյումինի մեջ տեղավորել հոկտեմբերիկի կրծքանշանը՝ կարմիր աստղը, որի կենտրոնում երեք տարեկան Լենինի նկարն էր։ Նա այնքան լավ էր հարմարեցրել կրծքանշանը, որ թվում էր, թե ուղղակի ձուլված էր արբանյակի հետ։

— Մեր արբանյակի անունը կդնենք «Հոկտեմբերիկ»,— ասաց նա առաջ գալով։

Երեխաները շրջապատեցին նրան։ Իսկապես որ լավ անուն էր, բոլորն էլ համաձայնություն տվեցին դրան։ Ինչպե՞ս է, որ մինչև հիմա չէին մտածել այդ մասին։ Ամենքն էլ ուզում էին ձեռք տալ, շոշափել արբանյակը, բայց Օնիկը թույլ չէր տալիս։ «Կեղտոտեք,— ասում էր նա,— տեսնո՞ւմ եք, ես էլ շորով եմ բռնել»։ Սակայն Ավետիք պապին նա թույլ տվեց, որ բռնի ձեռքով։



— Ինչ լա՜վն է, ինչ սիրու՜ն,— ասում էր պապը նայելով արբանյակի մեջ արտացոլվող իր մազոտ դեմքին։— Պա՛հ, պա՛հ, պա՛հ, ինչ որ հայելին։ Ապրե՛ք, տղերք ջան, ապրեք թոռնիկներս։

---

*) Սկիզբը տե՛ս «Պիոներ» №№ 7, 8։

digitised by A.R.A.R.@



Օնիկը բարձրացավ կտուր և փորձեց, թե արբանյակն ինչպես է մտնում խողովակի մեջ։ Մնացած տղաներն էլ կտուր բարձրացան։ Միայն Հովիկը մնաց ներքևում, և մինչ տղաները կտուրին իրենց գործն էին անում, Ավետիք պապը մոտեցավ նրան. մի պահ նայեց նրա շարժվող ծնոտին (Հովիկն այդ պահին աղի-բաղի էր ծամում) ասաց.

— Ա՛յ, տեսնո՞ւմ ես, ինչ սիրուն բան սարքեցին, իսկ դու ձեռքերդ գրպանդ հետևից, գալիս կանգնում էիր։ Մի բան էլ դու անեիր։

Հովիկը լուռ էր։ Նա ծամելու հետ նաև մի ուրիշ բան էր մտածում և որոշեց այդ մասին խոսել պապի հետ։

— Պապի, իսկ որ վառոդը պայթի, ծուխը ո՞րտեղից պիտի դուրս գա։

— Ի՞նչ ծուխ, ի՞նչ վառոդ,— զարմացավ պապը։

— Դե որ վերևում ամրացնեն արբանյակը, էլ ուրիշ անցք չի մնում, բա ծուխը որտեղի՞ց պիտի դուրս գա։

— Ծուխ չի լինելու,— ասաց պապը։

— Բայց չէ՞ որ վառոդը պիտի պայթի։

— «Վառո՛դ, վառո՛դ»... Արբանյակի մեջ մարտկոցներ են դրված, էլեկտրական մարտկոցներ, հասկացի՞ր։

— Էդ հասկանում եմ, ես հրթիռի միջի վառոդի մասին եմ ասում։

Այդ միջոցին մարագի կտուրից իջան ոգևորված տղաները։ Նրանք արբանյակը մտցրել էին խողովակի մեջ, ամրացրել։ Մնում էր միայն մարտկոցների լարերը միացնել ռադիոհաղորդիչին, այն էլ որոշեցին առավոտյան անել, արբանյակին արձակելուց առաջ. թե չէ էներգիան իզուր պիտի ծախսվեր։

Արդեն մութն ընկել էր, բայց տղաները տուն չգնացին։ Նրանք նստոտեցին տանձի ծառի թեք բնին, կանաչներին ու սկսեցին երազել։ Միայն Հովիկը տուն գնաց։ Թեև նրան ոչ ոք ոչինչ չէր հարցրել, նա հայտարարեց, որ ջութակ պիտի պարապի ու գնաց։

Շատ չէր մնացել։ Վաղը երեկոյան արդեն նրանք այս մարագի կտուրից պետք է դիտեին նոր աստղի սլացքը։ Այդ նրանց աստղն էր լինելու, նրանց արբանյակը։

Ավետիք պապը մտածմունքի մեջ էր ընկել։ Այն ի՞նչ վառոդի մասին էր ասում Հովիկը։ Չլինի՞ իրոք տղաները վառոդով էին ուզում արբանյակը երկինք նետել։ Օնիկն այդ մասին ոչինչ չէր ասել։ Ի՞նչ երկինք, ի՞նչ բան։ Ավետիք պապը մտածում էր, որ տղաներ են, դաս չկա, բան չկա, թող զբաղվեն, գուցե մի լավ բան դուրս բերեն։ Եվ այդպես էլ եղել էր։ Այդքան սիրուն բան նա դեռ չէր տեսել. ոնց որ գործարանում շինած լինեին։

Ուշ երեկո էր, երբ տղաները ցրվեցին։

— Ավետիք պապ,— ասաց Օնիկը,— արբանյակը վերևում է, լավ կնայես։ Առավոտյան բաց ենք թողնելու։

— Լա՛վ, լա՛վ, գնացեք,— ասաց նա,— հանգիստ գնացեք, ես էստեղ եմ։

Ու տղաները տուն գնացին։ Նրանք հաճույքով այստեղ կլուսացնեին, բայց ծնողներից ոմանք արդեն եկել էին նրանց հետևից։ Գնացին նրանք՝ հոգիները երազներով ու թռիչքներով լի։

## ԵՐԱԶՆԵՐ ԵՎ ԱՆՀԱՅՏԱՑՈՒՄ

Վարազը թռչում էր երկնքով։ Նա դարձել էր մի լուսատու արբանյակ։ Ահա նա անցնում է լուսնի մոտով, պտտվում հեռու՜, հեռու՜։ Իսկ երկնից վեր թռչում էր Օնիկը, որ մի կլոր գունդ էր դարձել ու գլխին լայնեզր գլխարկ դրել։ Հետո գլխարկը վերևից պտտվեց ու իջավ նրա փորի վրա և սկսեց պտտվել։ Ի՞նչ Օնիկ, դա Սատուրն մոլորակն է, իսկ այն մեծը, որ Ավետիք պապի կերպարանքն ունի, երևի Յուպիտերն է։ Ի՞նչ հրաշալի բան է թռչելը, ի՞նչ լավ է, երբ լույս ես արձակում։ Երևի այնտեղ ներքևում, Երևանի Այգեստանի թաղամասի բարձր կտուրի վրա տղաները կանգնած հիմա իրեն են նայում։ Նա փորձեց ցած նայել, բայց ոչինչ չտեսավ։ Երևի դեռ քնած են։ Դե, իհարկե, քնած են, առավոտյան պիտի արբանյակն արձակեն։ Իսկ ինքը ինչ է, չպիտի՞ տեսնի արբանյակի արձակումը։ Վարազը սկսեց քարի նման ցած ընկնել։ Նա անցավ աստղերի միջով, հասավ Լուսնին և ուղիղ սլացավ դեպի Երկիր։ Ահա աչքից երևում է Սևանը, Երևանը ո՞րտեղ կլինի։ Դե ինքն ուղիղ Երևանի վրա է իջնում, Այգեստանի վրա։ Այս ի՞նչ է, այս



digitised by A.R.A.R.@



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ի՞նչ թնդանոթ է, որ փողը լայն բացած նայում է իրեն։ Հիմա այդ լայն բերանը կուլ կտա Վարագին։ Եվ իրոք, Վարագն իջնում է այդ փողի մեջ ու նստում այնտեղ, ուր երեկոյան իրենք ամրացրել էին արբանյակը։ Նա նստեց կլոր ու շողշողուն, ձեռքերն ու ոտքերը անտենաներ դարձրած։ Ի՜նչ լավ եղավ, առավոտյան կգան, կպայթեցնեն վառոդը և ինքը նորից երկինք կթռչի, նորից կխառնըվի աստղերին։

— Վարա՛գ, Վարա՛գ,— հանկարծ նա լսեց մոր ձայնը։ Այս ի՞նչ բան է. մայրիկն ի՞նչ գիտի, թե ես որտեղ եմ։

— Վարա՛գ, զարթնի՛ր, Արամը քեզ է կանչում։

Վարագը միանգամից վեր թռավ։ Դրսում արդեն լույս էր։ Ի՜նչ տարօրինակ երազ էր։ Հանկարծ նա հիշեց արբանյակն ու մի քանի րոպեում հագնըվելով դուրս թռավ։

— Վարա՛գ,— նրան տեսնելով ձայն տվեց Արամը,— Վարա՛գ, արբանյակն անհայտացել է։

— Ինչպե՞ս թե անհայտացել է,— աստիճաններից ցած թռավ նա ու նետվեց դեպի մարագը։ Արամը նրա հետևից հազիվ էր հասնում։ «Ինչպե՞ս թե անհայտացել է» — մտածում էր նա։

Բոլոր տղաներն արդեն մարագի մոտ էին, Օնիկը շվարած կանգնել էր «հրթիռի» մոտ ու նայում էր, ներքևում բացված փոսին։ Անհայտ անձնավորություններ քանդել էին հողը և երկաթե սյան միջից հանել ամբողջ վառոդը և ֆոտոժապավենները։ Վառոդը բերել էր Շահենը։ Նրա հայրը որսորդ էր և ահա նրա վառոդի ամբողջ պաշարը մի երկու օր առաջ տեղափոխվել էր մարագ։ Գեղամը բերել էր իր եղբոր հնացած ֆոտոժապավենները։ Հիմա չկային ո՛չ վառոդը, և ո՛չ էլ ժապավենները, որոնց պայթյունը արբանյակը պիտի երկինք բարձրացներ։ Բայց այդ բոլորը ոչինչ, չկար նաև արբանյակը։ Ի՞նչ էր եղել, ովքե՞ր էին անհայտ չարագործները, որ տղաների մի ամբողջ ամսվա աշխատանքը ջուրն էին գցել։ Թարսի պես Ավետիք պապն էլ այգում չէր, որ իմանային, թե ինչպես է եղել։ Ա՜խ, այդ Ավետիք պապը։ Տղաներն իզուր փնտռեցին նրան, իզուր տուն գնացին։ Պետք է գիշերը հերթով պահակ կանգնեին, և հիմա արբանյակն արդեն օդ բարձրացած կլիներ։

Տղաները դեռ անշարժ կանգնած էին և խոսք չէին գտնում ասելու, երբ հայտնվեց Ռուբենը։ Ռուբե՜նը... բայց դուք դեռ նրան չեք ճանաչում։ Դա էլեկտրամոնտյոր էր, որ ապրում էր Գեղամենց բակում, նրա եղբոր ընկերն էր։ Երեխաները Ռուբենին էլ էին սիրում։ Ախր այդ նա էր, որ արդեն մի քանի տարի անընդհատ օգնում էր երեխաներին բակային ճամբար կազմակերպել։ Օգնում էր Անահիտին ամեն գործում, անց էր կացնում ճամբարի էլեկտրական լույսերն ու ամրացնում աստղը կայմի վրա։ Նա ամեն երեկո հետաքրքիր զրույցներ էր անցկացնում ճամբարում, օգնում երեխաներին։ Օնիկը նրանից շատ բան էր սովորել, բայց արբանյակի մասին գերադասում էր Ռուբենին չասել։

— Հը՛, տղերք, ի՞նչ եք քթներդ կախել, ինչ է պատահել։

Ոչ ոք նրան չպատասխանեց։

— Այդ ի՞նչ եք անում այստեղ, եկեք գնանք պիոներ-պալատ, այնտեղ լավ ցուցահանդես է բացվում։ Կգա՞ք։— Հետո նա ավելացրեց,— որ իմանաք ինչ էքսպոնատներ կան, կզարմանաք։

Նորից լռություն էր տիրում։

— Չէ, ինչպես տեսնում եմ, բոլորդ էլ ջուր եք առել բերաններդ։ Լա՛վ, վերցրեք այս հրավիրատոմսերը, ինքներդ կգաք։ Սկիզբը ուղիղ ժամը տասին է։

Եվ մի քանի հատ հրավիրատոմս տալով Շահենին, գնաց, չգիտես ինչու քթի տակ ժպտալով։

## ԱՐԲԱՆՅԱԿԸ ԾՈՂՈՒՄ Է

Ի՞նչ անեին։ Լռությունը հանկարծ միանգամից ընդհատվեց։ Սկսեցին իրար մեղադրել։ Օնիկը Վարագին ու Արամին, Վարագը՝ Շահենին ու Գեղամին, Աշոտը՝ Արամին, իսկ Արամը՝ բոլորին։

— Իզուր մի ամիս զրկվեցինք պաղպաղակից,— ասում էր նա։

— Ձայնդ կտրի՛ր,— գոռաց ջղայնացած Օնիկը,— «պաղպաղա՛կ, պաղպաղա՛կ», կարծես թե աշխարհում ուրիշ ավելի լավ բան չկա։

— Իսկ եթե արբանյակն արդեն երկնքում է,— փորձեց կատակել Շահենը։— Ի՞նչ կա որ։ Ավետիք պապը նստել էր հրթիռի մոտ ու ծխել և մեկ էլ հո՛պ, արբանյակը թռավ...

Բայց ոչ։ Կատակի տրամադրություն չկար։



digitised by A.R.A.R.@

— Եկեք գնանք ցուցահանդես, գուցե այնտեղ է մեր արբանյակը,— նորից կատակեց Շահենը:

Էլի ոչ ոք չծիծաղեց, բայց ցուցահանդես գնալու միտքը Շահենին դուր եկավ: Իսկապես ինչո՞ւ չգնալ, անցյալ տարի նրանք բոլորն էլ մասնակցում էին այդ ցուցահանդեսին, իսկ Օնիկը նույնիսկ մրցանակ ստացավ: Այդ արբանյակի պատճառով այս տարի զրկվեցին ցուցահանդեսից: Նրանք տըխուր-տրտում բռնեցին պիոներ-պալատի ճամփան:

Ցուցահանդեսում մեծ բազմություն էր հավաքվել: Օնիկը առջևից, իսկ տղաները նրա հետևից անցնում էին սրահներով ու նախանձով նայում գեղեցիկ էքսպոնատներին: Ինչե՜ր ասես չէին պատրաստել երեխաները. փոքրիկ հաստոցներ ու մեքենաներ, նավերի ու օդանավերի մոդելներ, գործիքներ ու տնային առարկաներ: Առանձնապես շատ մարդ էր հավաքվել դպրոցներից մեկում պատրաստած մի հաստոցի մոտ: Խառատի հաստոցն իսկականից աշխատում էր, միայն թե երկաթ չէր տաշում, այլ հենց այնպես պտտվում էր: Մի ուրիշ տեղ շոգեքարշ էին պատրաստել, որ էլի ետ ու առաջ էր շարժվում կարճ ռելսերի վրա:

Տղաները մի ուրիշ սրահ մտան: Բակային ճամբարների սրահը: Այստեղ մի մեծ բազմություն հավաքվել էր կենտրոնում, նրանք շրջան էին կազմել և գլուխները վեր ձգած նայում էին ինչ-որ առարկայի: Օնիկը և մյուսները մոտեցան այդ բազմությանը և ոտների թաթերի վրա բարձրացած աշխատեցին տեսնել, թե ինչ կա կենտրոնում: Իսկ կենտրոնում մետաղե բարակ ձողի վրա ամրացված շողշողում էր մի... արբանյակ: Ճիշտ և ճիշտ նրանց սարքած արբանյակի նման. գեղեցիկ, փայլուն, ետ ընկած չորս անտենաներով, իսկ ճակատին հոկտեմբերիկի կրծքանշանը:

Օնիկը մարդկանց ճեղքելով առաջ անցավ և այն, ինչ նա տեսավ, բոլորովին էլ հավատալու չէր: Արբանյակի մոտ, աթոռի վրա նստած էր Ավետիք պապը և ինչ-որ բան էր պատմում: Օնիկը մի հայացք գցեց պատվանդանին փակցրած պիտակին: Իսկ այնտեղ գրված էր. «Արբանյակ «Հոկտեմբերիկ»: Պատրաստել են Այգեստանի № 5 բակային ճամբարի պիոներները՝ Օնիկ Զախմախյանը, Վարազ Սիմոնյանը, Շահեն Խաչատրյանը, Գեղամ Սահակյանը, Աշոտ Մնդրյանը և Արամ Ազատյանը»:

Օնիկն աչքերը փակեց ու նորի՛ց բացեց: Այս ի՞նչ բան է, իրոք այդ բոլորը գրված է: Մինչ այդ, մոտեցել էին նաև մնացած տղաները ու զարմացած նայում էին մերթ արբանյակին, մերթ Ավետիք պապին և կարծես թե ամեն ինչ արդեն հասկանալի է դառնում: Իսկ արբանյակը շողշողում էր:

* * *

Այո, դա մակետ էր, սովետական առաջին արբանյակի մակետ, թեև ներսում ութ հատ էլեկտրական մարտկոց ուներ և մի քանի անգամ ավելի մեծ էր, քան ամերիկյան առաջին արբանյակը: Նա չէր կարող սլանալ երկինք և պտտվել երկրի շուրջը, թեև տղաներն ուզում էին այդ: Դե ինչպե՞ս պիտի կարողանային նրանք այդքան հեշտ երկինք արձակել մի թեկուզ փոքրիկ արբանյակ: Դեռ լավ էր, որ Ավետիք պապը ժամանակին հայտնել էր այդ մասին Ռուբիկին ու քանդել հանել էին վառոդը: Երբ հետո Ռուբիկը տղաներին բացատրեց, թե ինչ սարսափելի հետևանք կարող էր ունենալ այդ գաղտնի մտադրությունը, նրանց մարմնով սարսուռ անցավ: Դե, իհարկե, նրանք այլևս նման բան չեն անի: Բայց ո՞վ գիտե, գուցե և՛ Օնիկը, և՛ Վարազը, և՛ մյուս տղաները իր ժամանակին դառնան դեպի երկինք սլացող արբանյակների ու տիեզերական նավերի շինարարներ:

## ԱՇՈՒՆԸ ԱՅԳՈՒՄ

*Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Աշու՛նը քամու՛ն ճամփեց շտապ.
Թե՝ փողդ փչիր ու զարկիր ծափ,
Հայտնիր բոլորի՛ն՝ գալիս եմ ես
Ու բարիքներ եմ բերում պես-պես:
Իսկ ինքը մրգի կողո՛վն առավ,
Որ բերքով լցնի տու՛ն ու մառա՛ն:
Եվ ուսի՛ն գցած մի դեղի՛ն շոր՝
Աշու՛նը ներկեց անտառ ու ձոր:
Պարեցի՛ն քամուց ծաղիկ ու ծառ,
Տերևներն ընկան ոսկեղեձա՛ն.
Կտրեց իր ձայ՛նը փոքրիկ առու՛ն,
Բայց այ՛ն ի՞նչ երգ է քամի՛ն բերում:
Այդ պիո՛ներներն են երգեր ասում,
Ու քաղում այգում միրգը հասու՛ն.
Խաղող, սերկևիլ, տանձ մեղրածոր
Եվ անուշահամ դեղձ ու խնձոր:
Ի՞նչ է աշու՛նը առա՛նց մրգի,
Էլ ի՞նչ այգեգործ, որ չերգի:
Քեզ հազար բարև, մրգի աշու՛ն,
Մեր առատության, երգի աշու՛ն...

digitised by A.R.A.R.@

# Շորե չստերը

Մ. ՇԱԹԻՐՅԱՆ

Մայրիկս, անշուշտ, հուսահատական քայլ էր անում։ Նա՝ երկու երեխայի տեր այրին, չէր կարող ինձ համար կոշիկներ գնել։ Ես ամբողջ ամառը ոտաբոբիկ անցկացրի։ Սակայն չէ՞ որ ես նրանցից կոշիկներ չէի էլ ուզում։ Ոչ, ամենահասարակ ու էժանագին չստերից դենը ես ուրիշ բան չէի էլ երազում։

Ոտաբոբիկ... Ով իր մանկության տարիներին ման է եկել առանց ոտնամանների, նա կհասկանա, թե դա ինչ է նշանակում։ Երբ ցերեկվա տապին գետում լողանալուց տուն ես վերադառնում՝ ջրի, արևի և ճանապարհի փոշու ազդեցությունից ոտքերիդ մաշկն անպայման ճաքճքում է։ Հետզհետե այդ ճեղքվածքները խորանում են, շատանում։ Նրանցից սկսում է արյուն ծորալ, և դու շաբաթներով չես կարողանում բուժվել մրմռացող վերքերից։ Բացի այդ, մեր քարքարոտ ու տատասկաշատ երկրում տասներկուամյա մանուկը չի կարող բոբիկ ման գալ ու ոտքը քարին չխփել կամ փշին չդնել՝ առաջացնելով նորանոր և ցավալի վերքեր։

—Այ շըփո՛—թըփո. մի քիչ կարգին ման արի, ոտներիդ տակը նայիր, է՛լի,—ամեն անգամ կըշտամբում էր ինձ մայրս, ուշադիր զննելով ոտքերիս հերթական վնասվածքները։

Բայց ես գիտեի, որ նա այդպես է ասում՝ իր խիղճը հանգստացնելու համար։ Մայրս շատ լավ է հասկանում, որ ոչինչ չի օգնի, մինչև ես կոշիկներ կամ գոնե հասարակ չստեր չհագնեմ։

Եվ ահա, ուրիշ ճար չգտնելով, նա մի օր ինձ համար հին, սև մահուդի կտորից չստերի նման մի բան կարեց։

Ինչ խոսք, որ դա լավ չէր. քանի դեռ ես բոբիկ էի ման գալիս, ոչ ոքի ուշադրությունը չէր գրավում։ Սակայն այժմ իմ ոտնամաններն ակնառու էին դարձնում մեր ընտանիքի ծայրահեղ չքավորությունը։ Եվ ես զգացի այդ՝ հենց որ շորե չստերովս հայտնվեցի բակում, խաղընկերներիս առջև։

Մեր դրացի Վռամի հայրն իմ հոր նման առաջին համաշխարհային պատերազմի զոհ էր, բայց այն տարբերությամբ, որ թողել էր ոչ թե երկու, այլ հինգ երեխա։ Վռամն ինձնից վատ էր հագնըվում, շարունակ ոտաբոբիկ էր, հնամաշ շորերով, քաղցած։ Նա այնքան ուժ չուներ, որ բացարձակ կռվում կարողանար հաղթել իր հասակակից տղաներին։ Չնայած դրան, նա մեր միջի ամենակռվարար տղան էր։ Պատրաստ էր վեճի բռնվել, ընդհարվել ամենաուժեղ պատանիների հետ և խաղաղվում էր միայն լավ ծեծ ուտելուց հետո։

Եվ հիմա էլ նա էր, որ առաջինը գոչեց.

—Տղե՛րք, մի Կարոյին նայեք՝ ինչ է հագել... հու՜-հու՜...

Ինձ իսկույն շրջապատեց ծաղրասեր մանուկների խումբը։ Ամբողջ հինգ րոպե ես նրանց չար սրախոսությունների և կծու ածականների թիրախն էի։ Ահա այդ պահին, ես հասկացա մորս թույլ տված աններելի սխալն ու կռահեցի, որ եթե անմիջապես չգտնեմ որևէ համոզիչ բացատրություն, շորե չստերն հագնելու համար՝ ընդմիշտ կմնամ ընկերներիս ծիծաղի առարկան։

—Ի՞նչ եք բերաններդ բացել, խրխնջում,—ասացի ես արհամարհական տեսքով։—Ես այս չստերը հագել եմ, որ լավ վազեմ...

Մենք հաճախ էինք վազքի մրցումներ սարքում։ Իհարկե, դա նման չէր իսկական մրցումներին։ Մեր տանտիրոջ այգում մի երկար, ուղիղ արահետ կար, որի վերջում կանգնած էր մի ծիրանի ծառ։ Մենք վազում էինք առանց ստարտում ծնկի չոքելու, կամ ֆինիշում կրծքով ժապավեն կտրելու։ Ով շուտ ձեռքով դիպչեր ծառին՝ նա էլ հաղթում էր։

Ս. ՔԱՐԱՋՅԱՆ

## ԱՂՄԿՈՒՄ

Աղմկում է Ջորագետը.  
Երգ է ասում խշշոցով,  
Տերևներ է տանում հետը  
Անտառներից դեպի ծով։  
Շառաչում է մայր անտառը,  
Համերգ տալիս ձորերին.  
Իր խնձորն է վայրի ծառը  
Տալիս վազող ջրերին։  
Վայրի ծառը գետի վրա  
Իր ստվերն է օրորում.



digitised by A.R.A.R.@

Իմ այդ բացատրությունը ոչ ոքի չհամոզեց։ Վռամն ու մի քանիսն իսկույն գոչեցին.

—Սրա՛ն տեսեք, երևխա է գտել, ուզում է խաբել...

—Էն է, ասա՝ փող չունենք, իսկական չուստ չենք կարող առնել...

—Հու՜-հու՜...

Ես արդեն պատրաստվում էի հարձակվել այդ Վռամի վրա, երբ հանկարծ լսվեց Մարտինի ձայնը.

—Կացե՛ք, ի՞նչ եք կպել տղից... Գուցե ճի՞շտ որ էդ չանքով ավելի հեշտ է վազել...

Մարտինը մեր մեջ բավական հեղինակավոր դեմք էր, և ես շատ ուրախացա այդ անսպասելի օգնության համար։ Իսկ նա, բարեկամաբար ժպտալով, դիմեց ինձ.

—Ճի՞շտ, էդ չանքով մարդ ավելի լավ կվազի...

## ՉՈՐԱԳԵՏԸ

Խնձորենիներն են լողում նրա
Պաղ ու զուլալ ջրերում:
Չի էլ հասնում մարդու ձեռքը՝
Նա գլխին է մեծ ժայռի,
Լուռ լսում է գետի երգը
Եվ աղմուկը անտառի:
Կարկաչում է Չորագետը,
Երգ է ասում փշշոցով,
Տերևներ է տանում հետը
Անտառներից դեպի ծով:

—Իհա՛րկե,—վստահ ասացի ես։

—Եվ, ով գիտի, դու հիմա բոլորից առաջ կանցնես, չէ՞...

Խոսելիս Մարտինը նայում էր իմ թիկունքում գտնվող ինչ-որ բանի, բայց ես ուշք չդարձրի դրա վրա, որովհետև նրա վերջին հարցն ինձ բավական շփոթել էր։ Ես ամենևին էլ համոզված չէի, թե կարող եմ բոլորից առաջ անցնել։ Սակայն ի՞նչ արած, այլևս անկարելի էր հրաժարվել ասածիցս։

—Բա ո՞նց...—արտասանեցի ես հնարավորին չափ համոզիչ տոնով։

—Տո՛, հերիք չի՞ գլուխ գովես,—բարկացած գոչեց Վռամը՝ արդեն կռվի պատրաստվելով։

—Ո՞վ է գլուխ գովում, Կարո՞ն,—իսկույն նրա կողմը շրջվեց Մարտինը։—Ա՛յ, հենց Սուրիկը գալիս է. կուզես՝ թող վազեն իրար հետ, կտեսնես, որ Կարոն կհաղթի...

Ես ցնցվեցի տեղումս, ետ նայեցի ու, տեսնելով մոտեցող Սուրիկին, նոր հասկացա ամեն ինչ... Այո, ես մոռացել էի, թե ում հետ գործ ունեմ։ Մոռացել էի, որ եթե Վռամը մեր միջի ամենաանմիջականն և կռվարար տղան է, ապա Մարտինը՝ ամենախորամանկը։ Երևի նա վաղուց էր տեսել Սուրիկին ու դիտմամբ «թևերիս տակ ձմե-



digitised by A.R.A.R.@

բուկ էր տալիս», որպեսզի ստիպի մրցել նրա հետ: Սուրիկը մեր ամենալավ վազողն էր: Նա ուներ երկար, մկանուտ ոտքեր, և դուք պիտի տեսնեիք, թե ինչպես նա վազելիս ամբողջ մարմնով առաջ էր թեքվում ու, ծնկները մինչև ծնոտը բարձրացնելով, սլանում էր՝ գեղեցիկ ու համաչափ քայլերով: Նրա հետ մրցելը անիմաստ էր:

Իսկ հիմա Մարտինը խորամանկորեն այնպես սարքեց, որ ես պիտի մրցեի նրա հետ: Մի պահ ուզեցի հենց սկզբից հրաժարվել, պարզ խոստովանել ամեն ինչ ու վերջ տալ այդ պատմությանը: Սակայն իսկույն պատկերացրի, թե ինչպիսի ծաղրուծանակի կենթարկվեմ, եթե հրաժարվեմ: Ոչ, ոչ, հրաժարվել անկարելի էր. ես ոչ միայն պիտի մրցեի, այլև աշխատեի, եթե ոչ հաղթել, ապա գոնե շատ ետ չմնալ Սուրիկից:

Մեզ շրջապատող փոքրահասակները, կամ ինչպես մենք էինք նրանց անվանում՝ «մանր-մժեղը» արդեն վազել էին Սուրիկի մոտ ու ամեն ինչ պատմել: Ուստի, երբ նա մոտեցավ, այլևս կարիք չկար բացատրելու, թե ինչ է կատարվում:

Այդ գեղեցիկ ու նրբիրան պատանին մեր միջի ամենաբարի ու ազնիվ տղան էր, բայց այդ րոպեին, ես ամբողջ հոգով ատում էի նրան: Նա մոտեցավ ինձ, նայեց իմ չարաբաստիկ չտերին և մեղմ ժպտալով, ասաց.

—Ինչ կա որ, Կարո ջան, արի վազենք...

Եվ մենք գնացինք մեր մրցատեղին:

Երևանյան ուշ աշունը պճնազարդել էր բերքից ազատված ծառերը ոսկեկարմիր գույներով: Ես ու Սուրիկը կանգնեցինք արահետի ծայրին, իսկ մյուսները գնացին ծիրանի ծառի մոտ, որովհետև բոլորն էլ կամենում էին տեսնել, թե ինչպես իմ ախոյանն ինձնից շուտ ձեռքը կզարկի ծառին:



Հետո Մարտինը բղավեց.—Մեկ, երկու, երեք,—ու մենք սլացանք առաջ...

Ինձ համար այդ վազքը ճակատագրական նշանակություն ուներ: Ես լարել էի իմ ամբողջ կամքն ու ուժերը, մինչդեռ Սուրիկը շատ ինքնավստահ ու անփույթ էր: Նա վազում էր ըստ իր սովորության՝ ժպտալով: Ես հենց սկզբից առաջ անցա նրանից: Հավանաբար, նա համոզված էր, որ շուտով ուժասպառ կլինեմ: Սակայն ես ուժասպառ չեղա և չթուլացրի վազքս: Առջևից ընթանալով, ես շարունակ ուզում էի ետ շրջվել ու նրան նայել, բայց բնազդաբար առաջ գնացի: Տարածության կեսում ես զգացի, որ նա մոտենում է ինձ,

## ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

(Սկիզբը տե՛ս «Պիոներ» №№ 3, 4, 5, 6, 7, 8)



Բայց արքան սաստեց.
— Կեր չտա՛ք հյուրին,
Մինչև չինարեն
Նա չսովորի:



— Երեսուն և հինգ
Հազար տառ ունենք,
Մի դարում այծին
Կսովորեցնենք:



Վա՛յ քեզ, խեղճ Այծիկ:
Նորից է ողբում.
— Աչա, իմ մայրիկ,
Քո դժբախտ որդուն:

digitised by A.R.A.R.@



Նկ. ՄԱՅԻՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

բայց գլխի ընկա, որ նա անհանգստացած է, վազում է ոչ առաջվա նման վստահ։ Իմ շունչը կտրվում էր, աչքերիս առջև մթնում։ Սուրիկին վերջում գրեթե հաջողվեց հասնել ինձ. բայց, այնուամենայնիվ, առաջինը ես ձեռքս ծառին զարկեցի։

Լսվեցին աղաղակներ, որոնք արտահայտում էին տարակուսանք, զարմանք և նույնիսկ վրդովմունք։ Տղաները չէին ուզում հավատալ տեսածին, հուսահատ էին, և այժմ, շրջապատելով ինձ, պատրաստ էին հարձակվել վրաս։ Ամենից շատ վրդովված էր, իհարկե, Մարատիկը, որն այս մրցման նախաձեռնողն էր և պատրաստվել էր իմ պարտությունից հետո ծաղր ու ծանակի ենթարկել ինձ։ Այժմ նա կատաղած բղավում էր.

— Չեղա՛վ... Նորի՛ց վազե՛ք...

Տարօրինակն այն էր, որ ես էլ էի զարմացած իմ հաղթանակի վրա, ես էլ էի հավատացած, որ կատարվել է ինչ-որ հակաբնական բան։ Միանգամայն արդարացի էի համարում, որ Սուրիկը կարող է ռևանշ պահանջել։

— Լավ, եկ նորից վազենք,— ասացի ես նրան։

Եվ հանկարծ տեղի ունեցավ անսպասելին. Սուրիկը, գրեթե լացակումած, արտասանեց.

— Հա՜ վազենք... Դու շորե չստերով ես, իսկ ես՝ կաշվե...

Մենք բոլորս քարացանք մեր տեղերում։ Կարծում եմ, որ ոչ ինքը՝ Սուրիկը, ոչ էլ մյուսները չէին հավատում, որ ես հաղթեցի այդ շորե չստերի պատճառով։ Սակայն փաստն անժխտելի էր. մեր ամենալավ վազորդը պարտված էր և փախենում էր կրկին չափվել հետս, պատճառ բռնելով, թե ես շորե չստերով եմ...

Նորից հնչեցին զարմանքի, տարակուսանքի և նույնիսկ վրդովմունքի բացականչություններ, բայց արդեն Սուրիկի դեմ ուղղված։ Մարատիկն իր մեջ կուտակված ողջ մաղձը թափեց նրա գլխին, Վռամը պատրաստ էր կռվի բռնվել հետը, և Սուրիկը՝ պարտված ու ամոթահար, հեռացավ ընդհանուր ծիծաղի ու «հո՜ւ-ո՜ւ...» բացականչությունների տակ։

Շատ տարիներ են անցել այդ օրից, և շատ փորձանքներ են եկել գլխիս։ Ես միշտ հիշել եմ իմ շորե չստերը և այդ մրցումը, երբ ես առաջին անգամ հասկացա, որ քիչ է ունենալ երկար ու մկանուտ ոտքեր և լավ շնչառություն, որ հաղթում է նա, ով ունի հաղթելու կամք...



Շորերը թաքուն
Այծիկը հանեց
Ու մտավ իսկույն
Թեյի արկղը մեծ։



Եվ տարան արկղը
Երկու չինացի.
Բոմբեյ քաղաքը
Մի կերպ հասցրին։



Խե՜ղճ վաճառական...
Երբ արկղը բացեց՝
Շլդիկի նման
Առովետ ցատկեց։

digitised by A.R.A.R.@

# ԲՆՈՒԹՅԱՆ ԳԻՐՔԸ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Հ. ՍԻՐԱԶՅԱՆԻ

Առավոտյան երկինքը պարզ, պարզ էր։ Ոչ մի կտոր ամպ չկար։ Եղանակը շատ լավն էր, միայն թե կեսօրին արևն սկսեց այնպես ուժգին այրել ամեն ինչ, ասես ցանկանում էր հրդեհել ողջ աշխարհը։

Պապը նայեց երկնքին ու ասաց.

— Ինչպես երևում է՝ անձրև է գալու։ Արևը կծում է...

Ստեփանիկի ծիծաղը եկավ։

Մեկ-մեկ պապիկը սիրում է զարմանալի բաներ ասել։ Ընդհանրապես, շատ է սիրում կատակել։ Նա սիրում է, երբ շուրջը ամենքն ուրախ են լինում, ծիծաղում են։ Պապը հենց դրա համար էլ կատակներ է անում։ Հիմա էլ երևի ճիշտ այդպիսի կատակ արեց։ Թե չէ, ինչպե՞ս կարող է արևը կծել, կամ ինչի՞ց է երևում, որ անձրև է գալու։ Ստեփանիկը նախ մի կուշտ ծիծաղեց և խորամանկ հայացքով նայեց պապիկին, իբր թե գիտե, որ կատակ է անում... Բայց և այնպես նայեց երկնքին։ Հեռվում, շատ հեռվում մի փոքրիկ գորշ ամպի քուլա էր երևում։ Առավոտյան այդ քուլան չկար։

Բայց Ստեփանիկը դրա վրա ուշադրություն չդարձրեց։

— Պապիկ, — ասաց նա, — բա արևը կկծի՞, դու այդ կատակով ասացիր, չէ՞։

— Կատակով չասացի, — ասաց պապիկը։ — Սովորաբար անձրևից առաջ արևն ավելի սաստիկ է այրում։ Դրանից էլ շատ անգամ իմանում են, որ անձրև պետք է գա։ Նման դեպքերում մարդիկ ասում են. «արևը կծում է»։ Ժողովրդական խոսելաձև է, բալիկ ջան, թե չէ, իհարկե, արևը չի կծի։

Մինչ նրանք այդպես խոսում էին, Ստեփանիկը մեկ էլ նայեց երկնքին ու նկատեց, որ այն փոքրիկ քուլան արդեն բավական մեծացել, մի ամբողջ ամպ է դարձել։

Երբ այդքան մեծ ամպ տեսավ Ստեփանիկը, արդեն ինքն էլ սկսեց հավատալ, որ անձրև է գալու։

Եվ իսկապես, կեսօրից քիչ անց, աշխարհը մի տեսակ մթնեց, և անձրև սկսվեց, այն էլ ինչպիսի՜ անձրև։ Այնքա՜ն շատ ամպեր էին



Իսկ այծը գոչեց.
—Բարով քեզ տեսա,
Պացանովոն չէ՞
Այս քաղաքն, ասա՛։



Հանկարծ ծերունին
Ձոքեց ու պառկեց,
Այսինքն՝ հյուրին
Բարևեց, հարգեց։



Ու վրա հասան
Չորս կողմից մարդիկ,
Երգեցին. «Ջան-ջա՜ն,
Սիրունի՛կ Այծիկ...»

digitised by A.R.A.R.@



կուտակվել երկնքում, այնքա՜ն մութ-մութ ամպեր... թե որտեղի՞ց և ե՞րբ էին այդքան շատ ամպեր հավաքվել. մարդ ուղղակի զարմացած էր մնում։ Այնպես էր մրնել, ասես բոլորովին էլ ցերեկ չլիներ։ Կայծակները շարունակ լուսավորում էին երկինքը, փողոցներով արդեն վազում էին անձրևաջրերի առվակները։

Արդեն ուշ երեկո էր։ Ստեփանիկը պառկել էր քնելու, բայց երկար ժամանակ նրա քունը չէր տանում։ Նա շարունակ ականջ էր դնում ամպերի որոտին, աչքի ծայրով նայում լուսամուտի կողմը, որը մեկ-մեկ, որոտից առաջ ուժգնորեն լուսավորվում էր կայծակներից։ Ստեփանիկը նկատում էր, որ երբ փայլատակում է լինում, ապա մի փոքր հետո էլ լսվում էր ուժեղ ձայն։

— Պապի, հանկարծ հարցրեց նա, – ինչի՞ց է՝ որ երբ կայծակ է լինում, քիչ հետո էլ ուժեղ ձայն է լսվում։

– Որոտն ու կայծակը միասին են առաջանում, բացատրեց պապը, -բայց նրանք տարբեր ժամանակներ են հասնում, քանի որ լույսը ձայնից ավելի արագ է տեղ հասնում։

– Պապի, իսկ դու ինչպե՞ս իմացար, որ այսօր անձրև է գալու, դեռ այն ժամանակ, երբ երկինքը բոլորովին պարզ էր։

– Դրա համար հարկավոր է կյանքում ուշադիր լինել։—Պատասխանեց պապիկը։ Եթե ուշադիր լինես, ապա կկարողանաս ժամանակի ընթացքում սովորել բնությունը հասկանալ։ Բնությունն էլ,—շարունակեց պապիկը, մի գիրք է, սովորիր նրա գրերը ճանաչել, սովորիր նրա լեզուն հասկանալ։ Այն ժամանակ անձրևը, ձյունը, չորայնությունը և շատ ու շատ երևույթներ կիմանաս նախօրոք։

Երբ Ստեփանիկը քնեց, երազ տեսավ, իբր թե պապիկը նրան մի մեծ, շատ մեծ, գիրք նվիրեց. «Սա բնության գիրքն է» — ասաց պապիկը։

Եվ Ստեփանիկը կարողանում էր այդ գրքի բոլոր տառերը կարդալ, բոլոր նշանները հասկանալ։



Փախչում է այծը,
Հետն էլ մտմտում.
«Ի՜նչ տեսակ ազգ է,
Ի՜նչ սովորություն»։



Ասես հարբել է
Փիղը անտառում,
Դալար ծառերն է,
Ահա կոտրատում։



Նա ձայնով իր՝ հաստ
Ասում է այծին.
—Բարձրացի՛ր վրաս,
Գնանք միասին։

digitised by A.R.A.R.@

# ԱՇՆԱՆ ԵՐԳ

*ՍՊԱՐՏԱԿ ԳԱՍՊԱՐՅԱՆ*

Սուլեց աշնան սառը քամին
Ու պար բռնեց այգում մեր,
Շոյեց դեղին տերևներին,
Պոկեց, տարավ սարն ի վեր։

Հետո գնաց, հեռու տեղից
Քշեց, բերեց ամպ ու ցուրտ,
Աշնան բարակ անձրև մաղեց
Դողացրեց ծառ ու թուփ։

Ու շշնջաց. «Քիչ էլ կացեք,
Շուտով կգա փափուկ ձյուն,
Հաստ վերմակով կծածկի ձեզ,
Կմտնեք դուք խորը քուն։

Նկ. Ժ. ՊԱՐՈՆՅԱՆԻ



Սուրում է՝ բազմած
Փղի շալակին
Ու նայում է ցած
Իր «աշտարակից»։



Երբ փիղը քնեց՝
Իր ճամփից հոգնած,
Այծը ցած սահեց
Ու ոտքով գնաց։



Իր կողքով ահա
Մի մարդ է անցնում.
— Ո՞ւր եմ ես, աղա՛...
— Աֆղանստանում։

(Շարունակությունը շապիկի 4-րդ էջում)

digitised by A.R.A.R.@

# Մեծ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾԸ



Հ. Գյուրջյան



ՀԱՂԹԱՆԱԿ (բրոնզ)

Ինչքա՜ն բազմազան և հետաքրքրական էին այն քանդակագործական աշխատանքները, որ վերջերս այնքան շատ մարդիկ էին գրավում դեպի Հայաստանի Պետական պատկերասրահի ընդարձակ դահլիճները։

Ո՞վ չի տեսել ռուս մեծ գրող Լև Տոլստոյին նվիրված շատ նկարիչների, քանդակագործների աշխատանքները։ Բայց հայ մեծ քանդակագործը Լև Տոլստոյի կերպարը ինքնուրույն ձևով է մեկնաբանել, նրա մեջ շեշտելով անսահման մարդկայնությունն ու գրողի մեծությունը։ Իզուր չէ, որ Երևանում ցուցադրվող Տոլստոյի քանդակը և Փարիզում կառուցված մոնումենտը ոչ միայն հայ քանդակագործ Հակոբ Գյուրջյանի, այլև համաշխարհային քանդակագործության մեջ Տոլստոյին նվիրված լավագույն գործերից են։ Հակոբ Գյուրջյանը ստեղծել է շատ մարդկանց դիմաքանդակներ. Մ. Գորկու, Ս. Ռախմանինովի, Մ. Սարյանի, Գ. Հովսեփյանի, Գ. Յակուլովի և այլ նշանավոր գործիչների դիմաքանդակներն այսօր զարդարում են մեր պատկերասրահը։

Հակոբ Գյուրջյանը կերտել է նեգրերի քանդակներ, որոնցում ցույց է տվել իր համակրանքն ու կարեկցությունը շահագործվողների նկատմամբ։ Ամեն մի աշխատանք կարծես խոսում է դիտողի հետ։

Գյուրջյանը հայկական կյանքին նվիրված բարձրաքանդակները մեծ սիրով և զգացմունքով է կերտել։ Իսկ ինչքա՜ն բնական են կենդանիների՝ շների, կատվի, աղվեսի քանդակները։

Հակոբ Գյուրջյանը մեռավ Հայրենիքից հեռու, Փարիզում, 1947 թվականին։ Նա ուզում էր, որ իր վերջին 40 տարիների կատարած աշխատանքները հասնեն Հայրենիք՝ և դառնան սիրելի ժողովրդի սեփականությունը։ Եվ ահա խնամքով պահպանված այդ գործերը, մեր կուլտուրայի անբաժանելի և անգնահատելի մասն են կազմում։



ՓԱՐՈՒՀԻ (գիպս)



5893-59

digitised by A.R.A.R.@



Գ. ՅԱԿՈՒԼՈՎ (բրոնզ)



ՆԵԳՐՈՒՀԻ (գրանիտ)



ՍԱԼՈՄԷ
(բրոնզ)

digitised by A.R.A.R.@

# Թե ինչու մայրիկը գրկեց ու համբուրեց Նորային



Լ. ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. Կ. ԳԵՈՐԳՋԱՆՅԱՆԻ

Քնելուց առաջ, երբ Նորան հաջորդ օրվա դասագրքերն ու տետրերն էր տեղավորում պայուսակում, ուրախացավ, որ ֆիզկուլտ ունեն։ Բայց հենց այդ պահին նա տեսավ իր մաշված ու պատառոտված մաշիկները, որոնք գրասեղանի տակից խեղճ-խեղճ նայում էին իրեն։

Տեսավ ու տխրեց։ Ի՞նչ աներ։ Խնդրեր մայրիկին, որ նո՞րը կարի։ Բայց չէ՞ որ նա բոլորովին ժամանակ չունի։ Աշխատանքից հոգնած տուն էր եկել և առանց հանգստանալու սկսել էր ճաշ պատրաստել, տունը կարգի բերել։ Հետո գնացել էր երեկոյան ինստիտուտ, որտեղ շատ ինժեներների հետ սովորում էր նաև Նորայի մայրիկը։ Եթե ասեր. ուրեմն մայրիկը մինչև ուշ գիշեր պիտի արթուն մնար. իսկ առավոտ շուտ նորից գործարան էր գնալու։

«Չէ, մեղք է մայրիկը»,— մտածեց Նորան ու որոշեց խնդրել Աստղիկ մորաքրոջը, որ նա կարի։

Առավոտյան, թեյելուց հետո, Նորան մաշիկների համար կտոր վերցրեց ու գնաց մորաքրոջ մոտ։ Երբ ներս մտավ, տեսավ Աստղիկ մորաքույրը լվացք է անում, իսկ նրա աղջիկը՝ Գայանեն, որ Նորայի տարիքին է, թեյ էր տալիս փոքրիկ Արամին ու Սեդային։ Նորան վերա-





digitised by A.R.A.R.@

դարձավ իրենց տուն և մի քանի րոպե մոլորվածի պես կանգնեց միջանցքում։ Ի՞նչ անի, ո՞ւմ մոտ տանի։ Ապա որոշեց ինքը կարել։ Նստեց ու սկսեց։ Սկզբում կտորի վրա գծեց մատիտով, ապա կտրեց։ Իսկ երբ բացեց, որ կարի, քիչ մնաց լաց լիներ, այնքա՜ն վատ էր, որ կարելուց հետո հագնել անհնարին ատրավ լիներ։

«Ոչ, չեմ կարող. կարել,— մտածեց նա,— ավելի լավ է նորից հներով գնամ, մինչև մայրիկը կարի»։

Նորան կտորները հավաքեց ու, երբ ուզում էր տեղը դնել, փոշմանեց։ «Իսկ ինչո՞ւ նորից չփորձեմ, հո միանգամից չի՞ լինի։ Մայրիկն էլ, որ շատ լավ է կարում, երբեմն չի կարողանում միանգամից կարել»։

Նա այս անգամ ոտքը դրեց կտորի վրա, գծեց մատիտով, խնամքով կտրեց ու սկսեց կարել։ Մինչև մեկը կարեց, մատը մի քանի անգամ ծակեց ասեղով, բայց ուրախությունից ցավ չէր զգում։ Իսկ երբ զույգ մաշիկներն արդեն պատրաստ էին, նա հագավ ու զարմացավ։ Մի՞թե ինքն է կարել...

Այնքա՜ն լավ էր նստում ոտքին, կարծես մայրիկը կարած լիներ։ Նա ուրախ-ուրախ նոր մաշիկները փաթաթեց թղթի մեջ, դրեց պայուսակը ու վազեց բակ։

Երեկոյան, երբ մայրիկը տուն եկավ, Նորան դպրոցից եկել, դասերն էր պատրաստում։ Մայրիկը մոտեցավ Նորան ու ասաց.



— Նորա ջան, երեկ տեսա, որ մաշիկներդ մաշվել էին, բայց մոռացել էի, որ այսօր ֆիզկուլտ ունեք։ Ամբողջ օրը մտքիցս չի գնացել, ընկեր Մուշեղյանը երևի շատ բարկացավ, հա՞։

— Ոչ, մայրիկ ջան, չի բարկացել, ինքս կարեցի,— և Նորան մայրիկին մեկնեց իր կարած մաշիկները։

Մայրիկը մի պահ զարմացած նայեց աղջկան, նրա ձեռքի մաշիկներին ու չգիտեր ինչ անի։ Հետո գրկեց ու համբուրեց Նորային։



digitised by A.R.A.R.@



# ՓՐԿԱՐԱՐ ՇՆԻԿՆԵՐԸ

ԷԼՅԱ ՍԱՐԳՍՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԴԱՐԾՅԱՆԻ

Շեկլիկ-մեկլիկ, փափկամազիկ
Երեք աղվես, երեք քույրիկ
Խոր անտառից խեղճ շլդիկին
Քարշ տվեցին մարգագետին։
Ա՜խ, այնպե՜ս էր դողդողում նա,
Քիչ էր մնում ուշքը գնա։



Շպրտեցին խոտի վրա,
Սաստիկ ցավեց թաթը նրա,
Սուր դանակը իսկույն բերին,
Արագ—արագ խարույկ արին։
Թռչկոտում են ուրախացած,
Պիտի ուտեն լավ խորոված։



Շլդիկն աղի արցունք թափում,
Աղաչում է ու պաղատում.
— Ա՜խ, խղճացեք, ինձ մի՛ մորթեք,
Ի՞նչ կլինի, ինձ բաց թողեք,
Վազեմ նորից անտառը խոր,
Գնամ գիրկը իմ հոր ու մոր...



Բայց չեն խղճում նապաստակին,
Չեն ափսոսում ջահել կյանքին,
Օ՜, սոսկալի չար են նրանք,
Ե՛վ ագահ են, և՛ խորամանկ։
Նրանց ճանկը թե որ ընկար,
Էլ ազատվել չկա՜, չկա՜...



Հենց այդ պահին այնտեղ, մոտիկ
Մարգագետնում երկու շնիկ
Խաղում էին ու վազվզում,
Թիթեռ, ճպուռ էին որսում։
Լաց ու կոծի ձայն որ առան,
Որսը թողին, այնտեղ թռան։

digitised by A.R.A.R.@

Ու այնպիսի ճիչ, աղաղակ
Բարձրացրին խնկույն նրանք.
Որ աղվեսներն ագահ ու չար
Թողին փախան լեղապատառ:
Խեղճ շլդիկին ազատեցին.
Թաթի արյունը լիզեցին:



Երբ լիզեցին. ցավերն անցան.
Նրանք անչափ ուրախացան:
Ու միասին մինչ իրիկուն
Խաղում էին ու կատակում.
Երգում էին ու պար գալիս.
Գլուխկոնծի էին տալիս:



Հետո փոքրիկ նապաստակի
Թաթից բռնած՝ ճամփով ծանոթ
Հասցրին տուն. շլդիկ մոր մոտ:
Ուրախացավ մայրը այնքան.
Եվ այդ օրից դարձան նրանք
Հավատարիմ. լավ բարեկամ:

*Թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

# ՄԻՏԿԱ-ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԵՎ ԿԱԽԱՐԴ-ԱՄԵՆԱԿԱՐՈՂԻԿԻ ԱՆՀԱՎԱՆԱԿԱՆ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*ՄԻԽԱՅԻԼ ԼՅԱՍՆԻԿ*

*Նկ. Ա. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*

*Իր փոքրիկ սենյակում փակված՝ Միտկա-Հետաքրքրասերը թաղվել էր ընթերցանության մեջ: Գիրքը պատմում էր շատ ու շատ հետաքրքիր բաների մասին: «Դեռ շատ հին ժամանակներում,— գրված էր այնտեղ,— Լուսինը գրավել է գիտնականների, գրողների և նույնիսկ հասարակ մարդկանց ուշադրությունը: Օրինակ, մի հնագույն առասպելության մեջ ասված է, որ չինացիները Երկիր մոլորակ են եկել Լուսնից: Իսկ մի քանի հին հնդկական սաղմոսներում գրված է, թե ինչպես կարելի է գնալ Լուսին ճանապարհորդելու:*

*Քիչ հետո Միտկան ստիպված էր ծիծաղել այն մարդկանց վրա, որոնք հավատացել էին, թե Լուսնի վրա մարդիկ են ապրում: Նրանք անուն էլ էին դրել և դրանց կոչել սելենիտներ: Որոշ հին գրքերում իսկ գրված է, եղել, թե Լուսնի այդ բնակիչները հաճախ այցի են գնացել իրենց եղբայրներին: Ընթերցելիս Միտկան այլև չհամբերեց, բարձրաձայն ասաց:*

*Այ քեզ ծիծաղելի բան:*
*Բայց զարմացավ, երբ իր հետևում լսեց.*
*— Ինչն է ծիծաղելի:*

*Անսպասելի էր մտել Կախարդ-Ամենակարողիկը: Միտկան տեսավ նրան և շատ ուրախացավ:*

digitised by A.R.A.R.@

— Լսիր, լսիր Ամենակարողիկ, տես թե ինչպես են մարդիկ մի ժամանակ մտածել Լուսին գնալ: «Մի գրող Լուսին է ուղարկել իր փոքր հերոսին, վարժեցրած կարապների թևերին դրած»:

— Կարդա՛, հետո կարդա՛: Անպայման գրված կլինի, թե երբ են մարդիկ գլխի ընկնում մեքենա հնարելու մասին:

Միտկոն շարունակեց.

«1638 թվականին մարդիկ առաջին անգամ մտածում են, որ դեպի երկնային տարածությունները ճանապարհորդելու համար կարելի է մի մեքենա ստեղծել»:

— 1638 թվականին... Ինչքա՜ն դանդա՛ղ է զարգանում գիտությունը,— ծանր-ծանր վրա բերեց փոքրիկ կախարդը:

— «Այդ ժամանակվանից անցնում է մոտավորապես երեք հարյուր տարի, և մարդկանց երազանքները կամաց-կամաց սկսում են իրականանալ: Անգլիացի գիտնական Նյուտոնն ապացուցել է, որ կարելի է բաց թողնել երկրի արհեստական արբանյակներ և տիեզերական օդանավեր: Իսկ ռուս գիտնական Ցիոլկովսկին դրել է գիտական աստղագիտության հիմքը: Նա ստեղծել է առաջին օդանավի նախագիծը»:

Այստեղ Միտկոն փակեց գիրքը.

— Գնանք, Ամենակարողիկ: Ես էլ չեմ համբերում:

— Սպասի՛ր,— կանգնեցրեց նրան փոքրիկ կախարդը, սատանայի ժպիտը դեմքին:— Նախ ասա, թե դու ի՞նչ գիտես Լուսնի մասին:

Միտկոն խելոքին պատասխանեց.

— Լուսինը գտնվում է երկրից 384 հազար կիլոմետր հեռավորության վրա: Այնտեղ գրեթե օդ չկա, ոչ էլ ջուր: Լուսնի ամենաբարձր լեռնագագաթը հասնում է 8880 մետրի: Լուսինը 3500 կիլոմետր տրամագիծ ունի, ութ անգամ ավելի թեթև է, քան Երկիրը:

— Ապրես: Իսկ գիտե՞ս, որ Լուսնի վրա մեկ օրը հավասար է Երկրի մոտավորապես 30 օրվան:

— Ուրեմն այնտեղ 15 օր գիշեր է, 15 օր էլ լո՛ւյս:

— Մոտավորապես:

— Է, դա հիանալի է, Ամենակարողիկ: Այնտեղ որ ասեն՝ «Վաղը կսովորեմ դասս», այդ կնշանակի՝ է՛, է՛... 15 օր հետո:

Ամենակարողիկը ծիծաղեց ընկերոջ կատակի վրա: Նա գիտեր, որ Միտկոն լավ աշակերտ էր և երբեք այսօրվա դասը վաղվան չէր թողնի: Նա արտասանեց իր կախարդական խոսքերը, և մի րոպե անց՝ երկուսն էլ ինչ-որ տարօրինակ զգեստներ հագան. ուսերի վրա կային ապակե զրահազգեստներ, փոքրիկ ռադիոսարքերով և անօդ տարածու-



digitised by A.R.A.R.@

վրայի բարձր լեռնագագաթները: Քիչ հետո հրթիռը սկսեց սահուն շրջաններ գծել Լուսնի վրա, նրա արագությունը նվազեց:

— Այ, իջնում ենք,— ասաց Ամենակարողիկը:— Թեթև մի հարված, և շարժիչի աղմուկը բոլորովին խլացավ: Միտկոն բացեց դռնակը և անհամբեր ցատկեց Լուսնի վրա: Բայց ո՜վ զարմանք, նրա ոտքերը խրվեցին փափուկ-փափուկ մոխրի մեջ, հետո բարձր ու պինդ հողին հասնելով, նա նորից վերև նետվեց ու կրկին սկսեց դանդաղ վայր ընկնել, այնպես թեթև, կարծես փետուր լիներ օդում: Նրա չորս բոլորը փոշու փոքրիկ հատիկներ էին բարձրանում, որոնք իր նման թեթև ու հանդարտ ընկնում էին Լուսնի վրա:

Միտկոն վախեցավ. այդ րոպեին իր գլխազգեստի լսափողերի միջից լսվեց Ամենակարողիկի ծիծաղը:

— Հա՛, հա՛, հա՛: Չգիտեի՞ր: Լուսնի վրա ձգողականությունը վեց անգամ ավելի քիչ է, քան Երկրի վրա:

— Բայց դու գիտե՞ս, որ Երկրի վրա երեսուն կիլոգրամ էի,— ասաց Միտկոն անակնկալի եկած:

— Ուրեմն՝ այստեղ վեց անգամ ավելի թեթև կլինես:

— Երեսունը բաժանած վեցի՝ հինգ:

— Այո, հինգ կիլոգրամ:

— Վա՜յ ինձ, լավ է որ մայրիկն այստեղ չի, թե չէ ինձ ուտեցնելով կսպաներ:

— Իսկ այժմ, արի շատ ուսումնասիրենք Լուսնի այս ամբողջությունը, քանի որ շուտով հետ ենք վերադառնալու: Միայն թե զգույշ շարժվիր: Ամենաթեթև թռիչքն էլ քեզ ա՜յ էն բարձունքները կթռցնի:

Միտկոն և Ամենակարողիկը առաջ շարժվեցին, խրվելով մեկ կարծր հողի, մեկ փխրուն, ձյան պես փափուկ փոշու մեջ: Քիչ հետո նրանց առաջ մի բարձր լեռնագագաթ հայտնվեց:

— Կարիք չկար, որ վերև բարձրանալու համար չարչարվենք,— ասաց Ամենակարողիկը:— Մի անգամ, որ ցատկենք, մինչև գագաթը կհասնենք:

Ամենակարողիկը ցատկեց: Միտկոն հետևեց նրան և կարծես միանգամից ուղիղ գագաթի վրա իջավ: Բայց տեղնուտեղը զարմանքից քարացավ: Ամենակարողիկը չկար, անհետացել էր: Միտկոն վախեցավ արդյոք ի՞նչ էր պատահել ընկերոջը:

— Ամենակարողի՛կ,— բղավեց նա: Ո՞ւր ես:

— Այստեղ եմ,— լսվեց փոքրիկ կախարդի ձայնը: Ես մութ մասում եմ: Մենք քեզ հետ միասին հիմա գտնվում ենք Լուսնի մութ և լույս կեսերի վրա: Այ ձեռքս երկարում եմ: Տեսնում ես:

Միտկոն տեսավ, թե ինչպես Ամենակարողիկի ձեռքը, կացնով կտրվածի պես, գնում կորչում էր տարածության մեջ:

— Տեսնում եմ,— ասաց նա:

— Այ, էս էլ՝ ես եմ,— ամբողջովին հայտնվեց Ամենակարողիկը: Այստեղ մթնոլորտ չկա, այդ պատճառով էլ գույները բազմազան չեն: Միայն սև ու սպիտակ կա:

Այդ րոպեին Լուսնի մութ մասում ուժեղ մի բոց բարձրացավ և կայծեր արձակեց:

— Այդ ի՞նչ բան է,— հարցրեց Միտկոն:

— Երկնաքար է, Լուսնին է խփվել: Բայց դու ոչ մի ձայն էլ չլսեցիր, որովհետև...

— Որովհետև մթնոլորտ չկա:

— Այո, ձայնի հաղորդիչը օդն է: Եթե օդ չկա ձայն էլ չկա: Իսկ հիմա գնանք, հրթիռը մեզ է սպասում: Երբ որոշ ժամանակ հետո մարդիկ Լուսնի վրա կառուցեն գիտական առաջին կայանը, էլի կգանք:

Քիչ հետո հրթիռը նրանց Երկիր իջեցրեց:

Բուլղարերենից թարգմանեց՝
Մ. ԹԵՐԶՅԱՆ



digitised by A.R.A.R.@

# Արագիլները

ՎԻԿՏՈՐ ԿՈՉԵՎՍԿԻ
(Ուկրաինացի գրող)

Մասիս կայարան: Շենքի տանիքին
Արագիլներն են բոլորվել հարմար,
Եվ չեն վախենում այդ ընտանիքին
Շոգ, շոգեքարշի ճիչեր անհամար:

Խաղաղությունն այդ նահապետական՝
Ճյուղաշեն բնում ծվարած հանգիստ,
Այս թխլիկ տղան սիրու՞մ է այնքան՝
Անխռով ուղեկցող ամեն գնացքի:

Նա թռչուններին ձեռք չի տա երբեք,
Թեև թվում են արդեն ընտանի:

Հապա՛, այս լողլող ճուտերին տեսեք.
Ի՜նչ լավն են, փափլիկ... Ցինը չտանի՞.

Վարար Նեղոսի հեռու ափերից,
Խիտ անտառներից, շամբուտներից թավ
Արագիլները եկել են նորից
Իրենց հայրենի հողը՝ Հայաստան:

Բնի մեջ ահա նստած են հանգիստ
Բարեկամները հեռաստանների
Եվ աչք չեն թեքում ոչ մի գնացքից.
Ճամփա՞ն են պահում պանդուխտ հայերի...



Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Ջուրն են ճայերը նետվում հանկարծ
Նորից վեր սուրում արագաթև:
Նավակն է անցնում ձկնորսական,
Առաջ է լողում այնքա՞ն թեթև:

Մերթ առագաստը ձգվում քամուց,
Մերթ քրթմնջում է քիթը կախած:
Իր ձկնորս հորն է գրկել ամուր
Մի փոքրիկ տղա արևախանձ:

Կենդանացել է ջուրը կարծես:
Կայծեր է նետում առաջ ու ետ,
Հովն է տղային տալիս հարցեր,
Խաղում ոսկեփայլ մազերի հետ:

Ճայե՛ր, ճայե՛ր են չորս կողմ ճախրում.
Պարում է կարծես բուքն սպիտակ:
Թևերն են անվերջ թափահարում,
Մերթ օդի մեջ են, մերթ ջրի տակ:

Սակայն ամեն ինչ փոխվեց հանկարծ.
Ոռնաց, գազազեց քամին սաստիկ.
Փրփուրն ճերմակ թիկնոց հագած՝
Նա վրա պրծավ առագաստին:

Ալիքների մեջ փոթորկալի
Կրծքով է նավակն ուղի բացում:
Փոքրիկ տղայի լացն է գալիս,
Դեմքին սարսափ կա և հիացում:

—Բեր արցունքներդ սրբեմ, տղաս,—
Ասում է հայրը,—պի՛նդ պահիր քեզ.
Այսօրվա քամուց թե վախենաս,
Վաղվա փոթորկից կկործանվես:

Ուկրաիներենից թարգմ.
ՊԱՐՈՒՅՐ ՄԻԽԱՅԵԼՅԱՆ

digitised by A.R.A.R.@



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՏՈՆ Է, ՑՆԾՈՒԹՅՈ՛ՒՆ

Օգոստոսի 22-ն էր։ Կիրովականում ամենուրեք փողփողում էին դրոշները՝ քաղաքը հրդեհելով իրենց ալ բոցով։ Հանդիսավոր վեհություն էր տիրում այդ առավոտ քաղաքի կենտրոնական հրապարակում։ Պիոներական շեփորների կանչերի տակ հրապարակ էին մտնում կարմիր վզկապավորների կուռ շարքերը։ Պիոներական 500 պատվիրակներ էին եկել ռեսպուբլիկայի տարբեր շրջաններից։ Նրանց շարքերում էին Մոսկվայից, Էստոնիայից, Վրաստանից, Ադրբեջանից եկած թանկագին հյուրերը։ Նրանք բոլորն էլ եկել էին մասնակցելու Հայաստանի պատանի պիոներների ռեսպուբլիկական 6-րդ տրադիցիոն հավաքին։

Իրենց պատանի բարեկամների պիոներական այդ մեծ տոնին մասնակցելու էին եկել նաև ՀԿՊ կենտկոմի քարտուղար ընկ. Հր. Մարգարյանը, ՀԼԿԵՄ կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Բաղդասարյանը, պատանի պիոներների Ռեսպուբլիկական խորհրդի նախագահ ընկ. Ա. Շեկոյանը, Լուսավորության մինիստր ընկ. Ծ. Սիմոնյանը, պարտիական, կոմերիտական և պիոներական շատ աշխատողներ։

Մի պահ հրապարակում լռություն է տիրում։ Եվ ահա պիոներական շեփորները ազդարարում են հավաքի բացումը։ Հավաքի մասնակիցներին ողջույնի ջերմ խոսք են ասում ընկերներ Ա. Շեկոյանը, Ս. Բաղդասարյանը, պիոներներ՝ Էվելինա Ադամյանը, Յուրա Դյոմինը, որ կտրել էր հազարավոր կիլոմետրեր ու մեր մեծ Միության մայրաքաղաք Մոսկվայից բարեկամության սրտաբուխ խոսքեր բերել հայ պիոներներին։ Մինչ բարձր կայմի կատարին փողփողում էր կարմիր դրոշը, հարյուրավոր մատաղ կրծքերից հորդում էին «Լենին» երգի հարազատ հնչյունները, ալիք-ալիք թևածում հրապարակի, շրջակա փողոցների վրա և արձագանքում սաղարթախիտ անտառներում։

Հավաքի մասնակիցները թարմ ծաղկեպսակներ դրեցին ռևոլյուցիայի բոցաշունչ տրիբուն Ս. Մ. Կիրովի հուշարձանի պատվանդանին։

Սկսվեց պիոներական շքերթը։ Իրար էին հաջորդում Երևանի, Լենինականի, Կիրովականի, ռեսպուբլիկայի այլ քաղաքների ու շրջանների պիոներական պատվիրակությունները։ Հրապարակում ծփում էր դրոշների ծովը, հնչում էին շեփորները, թնդում թըմբուկները, հաճելի աղմկում ծնծղաները։

Իսկական պիոներական տոն էր դա, մատաղ սերնդի բուռն ցնծություն...

Օգոստոսի 22-ից մինչև 25-ը Կիրովականը պիոներական քաղաքի տեսք էր ստացել։ Վանաձորի ճամբարներում, լայնահուն փողոցներում, գործարաններում, ֆաբրիկաներում, ամենուրեք կարելի էր տեսնել պիոներների։ Նրանք հանդիպում ու զրուցում էին արտադրության նորարարների, քիմիական արդյունաբերության վետերանների հետ, իսկ քաղաքի գլխավոր ճարտարապետ ընկ. Ջ. Անանյանը նկարների միջոցով նրանց ծանոթացնում էր նախկին փոշոտ, ողորմելի, Ղարաքիլիսային։ Հետո նա Ստալինի, Մյասնիկյանի անվան փողոց-



digitised by A.R.A.R.@



*—Մեր բարեկամությունը թող հավերժ լինի*

ները ցույց էր տալիս Նորակառույց, տուֆակերտ շենքերի կորպուսներն ու ոգևորված պատմում նոր, արդյունաբերական Կիրովականի հրաշալի առօրյայի և է՛լ ավելի հրաշալի հեռանկարների մասին։ Երեխաները կարծես հիանալի մի գիրք էին թերթում, բայց քարե գիրք, որտեղ տողերը ուղիղ ձգված փողոցներն էին ու պողոտաները...

Քիմիագործների կուլտուրայի պալատում հավաքի մասնակիցներին գեղարվեստական ողջույն էին հղում շնորհալի պատանի կիրովականցիները։ Մի երգին հաջորդում էր մյուսը, հեզանազ պարուհիներից հետո ասպարեզ էին մտնում Լոռու ավանդական տարազ հագած տղաները։ Հայկական ազգային կոխը կատարյալ աշխուժություն էր առաջացրել հանդիսականների մեջ։ Ուրախ երգում էր հովվական շվին, աշխույժ պարում էին կիրովականցիները, իսկ նրանց բուռն ծափահարում էին հանդիսականները։ Նրանց մեջ էին նաև տալլինցի Քրիստան, մոսկվացի Գալյան, բաքվեցի Ոզան, վրացուհի Էթերին... Ի՜նչ ուրախ էր, ի՜նչ երջանիկ այդ օրը։

№ 3 գիշերօթիկ դպրոցում Կիրովականի պիոներները հանդիպում ունեցան հյուրերի հետ։ Ռուս, էստոնացի, վրացի, ադրբեջանցի, հայ պիոներները բարեկամաբար ողջագուրվում էին, պատմում իրենց տպավորությունները։ Գիշերօթիկ դպրոցի սաները հյուրերին ցույց էին տալիս իրենց մեծ ու ընդարձակ ննջարանները, աշխատանքային սենյակը։ Հապա նաշարա՞նը, պիոներական սենյա՞կը։ Հյուրերը ծանոթացան գիշերօթիկ դպրոցի սաների առօրյային, հետո բոլորը միասին հավաքվեցին գեղազարդ դահլիճում։

— Այսուհետև թող ավելի ամուր լինի մեր բարեկամությունը սիրելի հյուրեր,—դահլիճով մեկ հնչեց Էլֆիդա Սկրտչյանի ձայնը։

Բարեկամության ջերմ խոսքեր ասացին Էթերի Բագրաձեն, Մերի Ջանաշվիլին, Քրիստա Օզը, Ռազիա Հումբաթովան, Գալյան, Վրաստանի պատվիրակության ղեկավարը, Մերի Ջանաշվիլին, խոսում էր հայերեն։

— Հայ և վրաց ժողովուրդների բարեկամությունն են երգել Ճավճավաձեն ու Սունդուկյանը, Թումանյանն ու Գրիշաշվիլին, մեր բոլորի սրտին այնքա՜ն մոտ ու սիրելի Սայաթ-Նովան,—ասաց նա։

Իսկ հին բոլշևիկ Ելիզավետա Մութաֆյանն այնքան էր ջահելացել, կայտառացել, որ ինքն էլ կարծես պիոներ էր դարձել։ Դահլիճով մեկ ղողանջում էր նրա առույգ ձայնը։

— Իմ լա՜վ բալիկներ, պիոներական հավաքի մասնակիցնե՛ր, Կիրովական քաղաքի հին ու նոր բոլշևիկների անունից ձեզ սրտագին ողջույն եմ հղում,—ասում էր նա։—Սիրեցե՛ք մեր Հայրենիքը, Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղե՛ք միշտ պատրաստ։

Ապա հնչեցին երգն ու երաժշտությունը, կենսախինդ մանուկների սրտաբուխ խոսքերը։ Պարում էին, ուրախանում տարբեր ազգերի պատանի ներկայացուցիչները։

Հաջորդ օրը կոնկուրսների օր էր։ Դահլիճների դռների վրա ցուցանակներ էին փակցված պարի, երգի, արտասանողների, զվարճացնող-մասսավիկների, թմբկահարների կոնկուրսների մասին։ Իրենց շնորհքն էին ցուցադրում պատանի պիոներները։ Այստեղ երևաց, թե ինչպես են քայլում նրանք պիոներական աստիճաններով։ Երևանցի Սուսաննա Դավթյանը հիանալի արտասանեց Դեմիրճյանի հռչակավոր «Պույ-պուչ մուկիկը» և գրավեց առաջին տեղը։ Իսկ երգի կոնկուրսում իր լավ ձայնով աչքի ընկավ Երևանի պատվիրակ Վիգեն Տերեղիշյանը։ Գոհար Աւիոյանն խսկական զվարճացնող-մասսավիկ էր։ Երևանցի այդ աղջիկն էլ առաջնություն շահեց կոնկուրսում։ Շատ հետաքրքիր էր թմբկահարների կոնկուրսը։ Այստեղ էլ փայլեցին կիրովականցիները։ Ամենահմուտ թմբկահարը կիրովականցի Սերյոժա Սարգսյանն էր։ Սեդա Թորոսյանի նկուն պարը բուռն ծափահարություններով ընդունեցին հանդիսականները։ Սեդան նույնպես շահեց առաջին մրցանակը։

Օգոստոսի 25... Այդ օրը տեղի ունեցավ սպոր-

digitised by A.R.A.R.@

տային մրցումներ, շքեղ կառնավալ։ Կառնավալը հրաշալի էր։ Այն իսկական գեղարվեստական հանույք պատճառեց դիտողներին։ Գեղեցիկ մտահղացված համարներով հանդես եկան Երևանի, Լենինականի, Կիրովականի պիոներները։ Սպորտի մեծ դահլիճի կամարների տակ ասես հավաքվել էին անտառային «գազանիկներ», բազմագույն «թիթեռնիկներ», սպիտակաթև «աղավնիներ», բզբզոց «ծաղիկներ»։ Հնչում՜էր երաժշտությունը, երեխաների ուրախ խմբերը պտտվում էին անհոգ ու թեթև...-

Ահա և հրաժեշտի երեկոյի վերջին պահն է։ Կուլտուրայի պալատն են հավաքվել բոլոր պատվիրակները։ Կոնկուրսներում, սպորտային մրցումներում առաջնություն շահած ջոկատները, պիոներները գավաթներ, հուշադրոշներ, նվերներ են ստանում։

Բայց ո՞ւմ համարել հավաքի լավագույն ջոկատը, ո՞ւմ շնորհել պատանի պիոներների ռեսպուբլիկական 6-րդ տրադիցիոն հավաքի հատուկ գավաթը։



Հավաքը անջնջելի տպավորություն է թողել այս կենսուրախ աղջիկների վրա

Լուսանկարները՝ Մ. ԲՈՋԱՐՅԱՆԻ

Դա վիճակվեց Կիրովական քաղաքի հավաքական 3-րդ ջոկատին, որն աչքի էր ընկել գրեթե բոլոր միջոցառումների ժամանակ։

Սպորտային մրցումներում բոլորից լավ հանդես եկան Երևանի Լենինյան շրջանի պատվիրակները։

## ՄԵՂԵԴԻ

ԶԱՎԵՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

*(Երևանի Հ. Պարոնյանի անվան դպրոցի 9-րդ դասարանի աշակերտ)*

Violino

Con anima

p delicato

mf

f

mp

p

mf

f

pp rit. perdendo

Նրանք շահեցին հավաքի սպորտային գավաթը։ Գեղարվեստական ինքնագործունեության գծով առաջին մրցանակ շնորհվեց Երևանի ու Լենինականի հավաքական ջոկատներին։ Բազմաթիվ ջոկատներ ու պատվիրակներ արժանացան Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության Ռեսպուբլիկական խորհրդի պատվոգրերին։

Ավարտվեց հավաքը։ Հավաքի պատվիրակներն ու հյուրերը նոր եռանդ ու լիցք ստացած՝ մեկնեցին գեղատեսիլ Կիրովականից։

digitised by A.R.A.R.@




Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

# ԱՐՅԱՆ ՄԱՍԻՆ

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
(Բժիշկ)

— Զինվորներ, պատրա՛ստ,— ՝հնչեց հանկարծ հրամանը,— հարձակվե՛լ թշնամու վրա:

Անտեսանելի հրամանատարը իր վերջին խոսքը դեռ չէր վերջացրել, երբ միլիոնավոր զինվորներ հարձակվեցին թշնամու վրա: Սկսվեց տևավոր մարտը:

Սա հեքիաթ չէ, բայց ճշմարտություն էլ չէ, որովհետև այժմ երկրագնդի վրա ոչ մի տեղ բազմամիլիոն զորքերի մասնակցությամբ պատերազմ աչքի չի տեսնում: Սակայն այս պատերազմը լինում է ամեն օր և այն էլ միլիոնավոր տարիներ շարունակ:

Բայց ովքե՞ր են այն զինվորները և որտե՞ղ են կռվում:

՝Այդ՝ կռիվը լինում է ամեն բոպե, ամեն վայրկյան մեր օրգանիզմում, մեր արյան մեջ:

Այո, այդ զինվորները մեր արյան մեջ են ապրում և կոչվում են սպիտակ գնդիկներ: Սպիտակ գնդիկներն օր ու գիշեր կռվում են մեր կյանքի և առողջության համար: Իսկ ինչ կլիներ, եթե նրանք չլինեին: Այդ դեպքում մեր օրգանիզմը կարող էին ներխուժել հիվանդություններ առաջացնող հարուցիչները՝ մանրէները:

Վերջիններս այնքան փոքրիկ են, որ սովորական աչքով չենք տեսնում: Նրանց մեջ կան նաև այնպիսինները, որոնց ամենակատարելագործված մանրադիտակն անգամ չի կարող ցույց տալ: Դրանք վիրուսներն են, որ շատ փոխանցավոր են, թունավոր և կարող են առաջացնել մահաբեր հիվանդություններ: Բայց այդ բոլոր տեսակի մանրէների հետ, առանց վախենալու մարտի մեջ են մտնում արյան մեջ գտնվող սպիտակ զինվորները:

Եվ գիտե՞ք, թե ինչն է զարմանալին: Սպիտակ զինվորներն անզեն են, բայց քաջ ու անվախ: Հարձակվում են ամենազորեղ մանրէների վրա, բռնում նրանց և... կուլ տալիս: Այո, այո, ոչ թե սպանում են կամ ծեծում, այլ ուղղակի կուլ են տալիս և հանգիստ մարսում:

Դուք կհարցնեք. «Եթե արյան մեջ սպիտակ գնդիկներ կան, ինչո՞ւ է արյունը կարմիր, ինչո՞ւ այդ սպիտակներին չենք տեսնում»:

Ձեր հարցը տեղին է:

Եթե սպիտակ գնդիկներն իրենց ամբողջ կյանքն անց են կացնում պատերազմի մեջ, ապա նրանց նման չեն կարմիր գնդիկները: Նրանց քանակը արյան մեջ միլիարդների է հասնում: Մի փոքր


Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ

կաթիլ արյան մեջ կա հինգ միլիոն կարմիր գնդիկ, որոնք ամբողջ օրը վազվզում են:

— Ո՞ւր,— կհարցնեք դուք,— այդ ո՞ւր են այդպես շնչակտուր վազում:

— Մենք օրգանիզմի ամենահեռավոր ծայրերը թթվածին ենք տանում:

— Թթվածի՞ն, ինչ բան է թթվածինը:

— Ա՜յ ձեզ միամիտներ:—



digitised by A.R.A.R.@

Կպատասխանեն նրանք,— բա չգիտե՞ք ինչ բան է թթվածինը: Գազ է, օդի մեջ է լինում: Ոչ մի կենդանի էակ բնության մեջ առանց թթվածնի չի կարող ապրել: Որտեղ չկա թթվածին, այնտեղ չի կարող լինել և կյանք: Չեն կարող ծաղկել ծառերն ու ծաղիկները, չեն կարող ապրել կենդանիները, թիթեռները, բազմերանգ բզեզները: Երբ մարդը շնչում է, թթվածինը մտնում է թոքերը. իսկ այնտեղ կազմ ու պատրաստ կանգնած ենք մենք: Վերցնում



ենք նրան ու տանում հեռուն: Իսկ հեռավոր հյուսվածքներից առնում ենք օրգանիզմի համար թունավոր, անպետք նյութերն ու նորից բերում թոքերը: Երբ կենդանին արտաշնչում է, ապա այդ թունավոր գազերը քթից դուրս 'ն գալիս: Ահա թե ովքե՛ր ենք մենք:

Արյան մեջ, բացի սպիտակ և կարմիր գնդիկներից, կան նաև ուրիշ մասնիկներ: Նրանք կոչվում են արյունը մակարդող թիթեղիկներ: Եթե դրանք չլինեն, մի փոքրիկ վնասվածքից արյունը չի մակարդվի, և մարդն արնաքամ կլինի: Կան երեխաներ, որոնց արյունը կամ վատ է մակարդվում կամ չի մակարդվում: Այդ հիվանդությունը հազվադեպ է և կոչվում է հեմոֆիլիա: Արյունը հարուստ է սննդարար նյութերով. առանց այդ նյութերի, օրգանիզմն ապրել չի կարող:

Արյան կարմիր և սպիտակ գնդիկները ապրում են հաշտ ու խաղաղ և սարսափելի ատում են ծույլերին ու անգործներին:





## ԱՐԵՎԻ ԾԱՂԻԿ

Ճապոնացիները ավանդություններում իրենց երկիրը կոչում էին «Հինգհարյուր աշունների երկիր»: Ճապոնիայում աշունը տարբերվում է օդի մաքրությամբ և թափանցիկությամբ: Մուգ-կապտավուն երկնքի ֆոնի վրա հստակ կերպով գծագրվում է ամեն մի ծառ, ամեն մի թուփ ու ծաղիկ:

Արևի ճաճանչների տակ փայլփլում են քրիզանթեմների ոսկեղեն գնդիկները: Նրանցից որոշ մասի թերթիկները կարծես լուսավոր վերջավորություններով ծաղկավորված լինեն. մյուսների թերթիկները քմահաճ կերպով ծռվում են, կազմելով հարդի դեղին րծերով, արևագույն շքեղ մի կծիկ, երրորդներինը՝ ցցվում են արծաթե ասեղիկների նման: Կան այնպիսիները էլ, որոնց թերթիկները կոշտ մազ ունեցող վրձինի պես խոր ու նեղ բաժակից դուրս են ցցվում:

Ճապոնիայում կան և ուտվող քրիզանթեմներ:



Ուտվող քրիզանթեմների ծաղկի մեջ կա մոտ 250 լայն, սպիտակ, համեղ թերթիկ: Նրանցից սալաթ են պատրաստում: Չորացրած քրիզանթեմներից պատրաստում են դեղեր՝ մրսածության, ախորժակը բաց անելու համար:

Քրիզանթեմը Ճապոնիայում սիրված ծաղիկ է: Նա զարդարում է փոքրիկ պարտեզները և մեծ ու շքեղ զբոսայգիները: Սպիտակ և ոսկեգույն ծաղիկներով ցանված կասկադային քրիզանթեմները կանաչ ջրվեժի պես ցած են իջնում ճապոնական թեթև շենքերի տանիքներից և պատշգամբներից:

Քրիզանթեմը երգել են բանաստեղծները: Նրա պատվին սարքվում էին ժողովրդական տոնախմբություններ:

Գերբի և պետական կնիքի վրա պատկերված է տասնվեց թերթիկանոց քրիզանթեմը: «Քրիզանթեմի շքանշանը» երկրի բարձրագույն պարգևն է:

## ԱՋԻ՞Ց, ԹԵ՞ ՁԱԽԻՑ

Գիտե՞ք արդյոք, թե ինչու մի շարք եվրոպական երկրներում, հատկապես Անգլիայում, տրանսպորտի շարժումը ձախակողմյան է, իսկ այլ երկրներում, ինչպես, օրինակ, մեզ մոտ՝ աջակողմյան:

Պատճառը հետևյալն է.

Անգլիայում 15-րդ դարում գոյություն ուներ նավերի երթևեկության մի կանոն. դեմ հանդիման դուրս եկող առագաստանավերը միմյանց բախվելուց խուսափելու համար անցնում էին ձախից, արևի շարժման օրենքով: Այդ կանոնը դարերի ընթացքում այնքան արմատացավ, որ մտավ նաև փողոցային երթևեկության կանոնների մեջ:

Այլ երկրներում ցամաքային զորքերի համար իբրև կանոն ընդունված է եղել, որ առանձին զինվորներն ու ստորաբաժանումները անցնեն աջով, որպեսզի հանդիպողը մնար ձախ կողմում, այսինքն վահանի կողմը (աջ ձեռքում զինվորը պահում էր սուրը կամ նիզակը): Այդ կանոնը հետագայում տարածվեց նաև տրանսպորտի վրա, սկիզբ դնելով աջակողմյան երթևեկության: Վարորդի տեղը մեզ մոտ մեքենայի ձախ կողմում է, իսկ Անգլիայում՝ աջ կողմում:



digitised by A.R.A.R.@

## ՕՁ ՎԱՐԺԵՑՆՈՂՆԵՐԸ

Կրկեսում ցուցադրվող օձերը թունավոր չեն և առանց վախի կարելի է նրանց ձեռք տալ: Իսկ Հնդկաստանի օձերը թունավոր են: Նրանց վարժեցնող կանայք ամեն անգամ իրենց կյանքը վտանգի են ենթարկում:

Այդ օձերը կոբրաներն են, որոնց խայթոցը միշտ էլ մահացու է: Ասում են, թե նրանց թույնը նախօրոք հեռացնում են: Բայց դա ճիշտ չէ. այդ ձևով այլանդակված կենդանին շուտով անշնչանում է: Իսկ օձերի առաջ կատարվող պարերը բոլորովին չեն «կախարդում» նրանց. ընդհակառակը՝ գրգռում են, և նրանք ուղիղ դիրքով հարձակման են պատրաստվում:



Հնդկուհու ամբողջ վարպետությունն այն է, որ կարողանա խուսափել մահացու հարվածից: Նա գիտե, որ կոբրան չի թռչում, այլ միայն մարմինը ուղղահայաց դիրքով մի մետրաչափ վեր է բարձրացնում և մուրճի նման ընկնում թշնամու վրա: Այդ դեպքում կատաղած օձը կարող է վարժեցնողի ոտքերը խայթել: Բայց զարմանալի բան. չի խայթում: Հնդկուհին պարի ժամանակ ոտքերն անշարժ է պահում և շարժում է միայն կոնքերն ու իրանը, թափահարում է թևերն ու ձեռքերը: Դրանց վրա է կենտրոնանում կոբրայի ուշադրությունը:

Հնդկուհին հետզհետե ձեռքերը մոտեցնում է օձին: Վերջինս կարծում է, թե ժամանակն է խայթելու և արագ հարձակվում է, բայց պարուհին է՛լ ավելի արագաշարժ է: Նա մի ձեռքը ժամանակին ետ է քաշում, իսկ մյուս ձեռքով կայծակնային արագությամբ բռնում է կենդանու վիզը: Այդ վիճակում օձը այլևս չի կարող խայթել... Պարուհին օգտվում է առիթից և համբուրում է օձի դունչը:

Այդ տեսարանը շատ հուզիչ է: Պետք է մեծ խիզախություն, սառնարյունություն և ճարպկություն ունենալ, որպեսզի վտանգի չենթարկել կյանքը:

## ԲԼԻԹՆԵՐ ԾԱՌԻ ՎՐԱ

Արևադարձային արտոկարպուս ծառը անվանում են հացածառ: Շոգ երկրներում, ուր հացաբույսեր չկան, հացածառն է փոխարինում դրանց:

Հացածառերը աճում են հատկապես Խաղաղ և Հնդկական օվկիանոսների հեռավոր փոքրիկ կղզիներում: Կոկոսային արմավենին և հացածառը տեղական բնակչության սնունդի և հագուստի աղբյուրներն են:

Հացածառն իր տեսքով կաղնուն է հիշեցնում: Թեև արևադարձային շրջաններում է աճում, բայց դարձյալ տերևաթափվում է: Բնակիչները դրա տերևներից գեղեցիկ գլխարկներ են պատրաստում: Հացածառի պտուղները լինում են մարդու գլխի մեծությամբ և ավելին: Երբեմն դրանք հասնում են 20 կիլոգրամի: Պտուղները դասավորվում են ոչ միայն ճյուղերին, այլև բնի վրա, նույնիսկ արմատների մոտ:

Պտուղների մի մասը քաղում են դեռ չհասած վիճակում և եփում են տաք մոխրի մեջ: Եփվելիս կեղևը ճեղքվում է, և բացվում ախորժալի բուրավետ կաթնաճերմակավուն միջուկը: Բայց միայն հասած պտուղներն են փոխարինում հացին: Հացածառը պտղաբեր է 60—70 տարի, իսկ պտուղները հաջորդաբար հասունանում են նոյեմբերից մինչև հուլիս ամիսները: 5—7 ծառ կարող է կերակրել մի ամբողջ ընտանիք:

Հացածառը վայրի չէ, զուրկ է սերմից: Դրա համար էլ չի կարող առանց մարդու միջամտության տարածվել:

Հացածառի վայրի տեսակներից աճում են Հնդկաստանում, որոնք ունեն սերմեր, բայց լինելով վայրի՝ անհամ պտուղներ են տալիս:





digitised by A.R.A.R.@

# ՇԱԽՄԱՏ

*Այս համարից սկսում ենք շախմատային կոմպոզիցիայի հնագույն ուսուցման պարապմունքները։*

### ԱՌԱՋԱԴՐԱՆՔ № 1



*Համաձայն այս լուծման, 7 ֆիգուրայով վերականգնենք խնդիրը։ Իսկ նման անհրաժեշտ լինի 7-ից ավելի ֆիգուրա, ոչինչ։ Դժվարությունների հանդիպելիս, դիմեք խմբագրությանը։*

*Լուծումը.—*

Մատ երկու քայլից

| | |
|---|---|
| 1. Փh 3Ա e7 | 2. Թ f8 x |
| 1. . . Ա c6 | 2. Թ d7 x |
| 1. . . Ա d5 | 2. Թ e6 x |
| 1. . . Ա c7 | 2. Թ d7 x |
| 1. . . e4 | 2. Թ c5 x |



### ԽՆԴԻՐ-ԿԱՏԱԿ № 1

*Այստեղ բացակայում է սպիտակների արքան, որ դաշտում տեղադրել այն, որպեսզի հնարավոր լինի սևերի արքային մատ հայտարարել մեկ քայլից։*

### ԽՆԴԻՐ № 1

*Այստեղ տեղադրեք 8 թագուհի այնպես, որ իրար չհարվածեն ոչ ուղղահայաց, ոչ հորիզոնական և ոչ էլ անկյունագծերով։*

*Այս խնդիրն ունի 92 լուծում։ Աշխատեք գտնել բոլոր լուծումները։*

Ժ. ԲՅՈՒԶԱՆԴՅԱՆ

## այսպես ասում

### ՊԱՆԴՈՐԱՅԻ ՏՈՒՓԸ

Հունական դիցաբանությունը պատմում է, որ Պրոմեթևսը աստվածներից գողանալով կրակը՝ հանձնեց մարդկանց և նրանց բազմաթիվ արհեստներ սովորեցրեց։ Աստվածների հայր Զևսը զայրացավ, պատժեց Պրոմեթևսին և ուզեց մեծամեծ չարիքներով տանջել մարդկանց։

Նա հրամայեց կրակի աստծուն՝ Հեփեստոսին, որ հողից մի սիրուն աղջիկ ստեղծի։ Հեփեստոսն այդպես էլ արեց։ Աստվածները աղջկան կյանք ներշնչեցին, նրան զանազան պարգևներ տվին ու անվանեցին Պանդորա, որ նշանակում է բոլորի նվերը։

Զևսը Պանդորային ամուսնացրեց Պրոմեթևսի եղբոր՝ Էպիմեթևսի հետ։

Էպիմեթևսի տանը ամուր փակված կափարիչով մի մեծ տուփ կար։ Ոչ ոք չէր համարձակվում կափարիչը բաց անել, վախենալով, որ դրանից չարիք կգա աշխարհին։ Պանդորան այնքան հետաքրքրասեր էր, որ չկարողացավ երկար համբերել։ Ուզում էր իմանալ, թե ինչ կա տուփի մեջ։ Եվ մի օր հենց որ տուփի կափարիչը վերցրեց, այնտեղ բանտարկված աղետները մեղուների նման թևեր առած խուլույն դուրս թռան և տարածվեցին աշխարհի երեսին։ Միայն հույսը մնաց տուփի հատակին, որովհետև կափարիչը անմիջապես փակվել էր։

Մինչ այդ, աշխարհում մարդիկ երջանիկ էին ապրում։ Նրանք չէին իմանում ինչ է մահը, ինչ են չարիքն ու աղետները։

Այսպես, Պանդորայի ձեռքով, վրեժխնդիր Զևսը, բոլոր տեսակի չարիքներով ու աղետներով լցրեց ծովն ու ցամաքը, օդն ու ջուրը։

Պանդորայի տուփ արտահայտությունը այժմ փոխաբերաբար նշանակում է չարիքների ու աղետների աղբյուր։

Վ. ԳԱԼՍՏՅԱՆ



digitised by A.R.A.R.@



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը
նկ. Վ. ԳԵՈՐԳՋԱԿՅԱՆԻ



### ԿՐՈՍՎՈՐԴ ԵՐԵՔ ՏԱՌՈՎ

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—1. Սովետական ինքնաթիռի մարկա, 2. միրգ, 3. անդամներ, 4. ֆուտբոլային տերմին, 5. լուսավորության համար օգտագործվող իր, 6. ջրային տրանսպորտի տեսակ, 8. գազան, 10. լորազգի բույս, 12. քաղաք Ուզբեկստանում, 14. քաղաք Բաշկիրիայում, 16. հայ դիցաբանության հերոս, 17. Ուրարտուի առաջին մայրաքաղաքը, 18. Հին Հայաստանի խոշոր քաղաքներից, որը կործանվեց 13-րդ դարում, 20. գետ, որի ափին ռուս մեծ զորավարը ճակատամարտում հաղթեց շվեդներին և նրա անունով կոչվեց ինքը, 21. միանիշ թիվ, 22. ջրում ապրող կենդանի, 23. ալպինիստական արշավների ժամանակ օգտագործվող իր, 24. շախմատային տերմին, 25. միրգ, 26. գետ, որի անունն օգտագործված է Շոլոխովի վեպերից մեկի վերնագրում։



ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—2. Հերոս Մարկ Տվենի հանրահայտ վեպից, 4. շինանյութ, 7. նյութի վիճակ, 9. ձայնանիշ, 11. ընտանի թռչուն, 13. հեղուկ, 15. ժամանակի միավոր, 17. պտղատու ծառ, 19. կաթնամթերք, 21. Աֆրիկայում և հարավային Ամերիկայում ապրող կենդանի, 23. սպորտային խմբավորում, 25. ընտանի թռչուն, 27. անգլիացի նշանավոր ճանապարհորդ, 28. շախմատի գծով ՍՍՌՄ-ի էքս-չեմպիոն։

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱՐԽՈՒԴԱՐՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Դ., (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍԱՖՅԱՆ Դ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2-11-83, 2-59-09։

ՎՖ 05025. Պատվեր 946։ Տպաքանակ 6200։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 31/VIII 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.

Համարի գեղարվեստական ձևավորումը՝ նկարիչ Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ,



digitised by A.R.A.R.@

## ՄՏԱԾԻՐ՝ ՀԵՏՈ ԱՍԱ



1. Ո՞ր մատիտն է ավելի երկար։



2. Այս առարկաներից ո՞րն ավելի շուտ կհասնի հատակին. գնդի՞կը, խորանարդը, թե՞ գլանը։

### ՌԵԲՈՒՍ

100 ՏԱՐԻ

Այստեղ կարդացեք սովետական ականավոր մանկագրի ազգանունը և նրա հանրահայտ ստեղծագործության վերնագիրը։

Առաջարկ՝ Ց. ՂԱՆԴԻԼՅԱՆԻ

## ԿԱՐԴԱՑԱԾ ԳՐՔԵՐԻՑ



Առաջարկ՝ Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ



3. Անհնարություն։

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» №8

ՉԱՅՆՎՈՐԴ-ԳԱՂՏՆԱԳԻՐ

1. Բաղեղ, 2. Ղրիմ, 3. մարա, 4. Տոլոլ, 5. լոբ, 6. լալե, 7. Եվրոպա, 8. Աթենք, 9. Բիլ, 10. Լևիտան՝ 11. Նյասա, 12. ածանց, 13. Ցյուրիխ, 14. խնձոր, 15. Րաֆֆի, 16. Իրտիշ, 17. Շոու, 18. Ուրալ, 19. Լիմա, 20. ալմաստ, 21. Տիգիլ, 22. լեհ, 23. Հայկ, 24. Կեյպտաուն, 25. Նևա, 26. ամբարտակ, 27. Կերչ, 28. Ձերնոգորիա, 29. Այոն, 30. Նինվե, 31. Երևան, 32. Նիագարա, 33. արար։

Շրջագծում կարդացվում է. «Արմատ ունի, ցողուն ունի, բայց մի հատիկ տերև չունի» (սունկ)։



digitised by A.R.A.R.@



—Է՜հ, խորհեց տրտում,—
Կկորչե՞մ այստեղ...—
Երբ տեսավ օդում
Արծվին պողպատե:



Անմիտն իր աչքին
Ինչպե՞ս հավատա...
Իր հայրենիքի
Սավառնակն է դա:



Սավառնակն հանկարծ
Վայրէջք կատարեց,
Ինչպես խելագար
Այծիկը ցատկեց։



Օդաչուն հարցրեց
Զարմանքն աչքերում.
—Ո՞վ քեզ հասցրեց
Այս երկիրն հեռու։



Նա ողջը պատմեց.
Հուզվեց օդաչուն
Ու այծին ասավ.
Ե՛կ, տանեմ քեզ տուն։



Եվ սավառնակը
Կորավ ամպերում,
Մայրաքաղաքը
Հասավ հինգ օրում։



Եկավ այծիկը
Ու հպարտ բազմեց.
Իր կյանքի գիրքը
Նա անգիր պատմեց։



—Քաղցած ես, կեղտոտ,—
Ասինք,—քաջ Այծիկ,
Ե՛կ, ճաշիր մեզ մոտ
Ու լավ լողացիր:



—Իզուր մի՛ խնդրեք,
Մի՛ պահեք զոռով,
Ես պիտի փնտրեմ
Դեռ Պացանովըն։



Ասաց ու խոնարհ
Հրաժեշտ տվեց
Ու երկրից իր մայր
Նա կրկին չվեց...



Աղետ չորս կողմից...
Կանգնել է չվար.
Հալածում է միշտ
Այծին բախտը չար.



Թարմ լուրեր է նա
Ուղարկում կրկին,
Որ արժանանաք
Նրա նոր գրքին։

*Թարգմ. Գ. ԲԱՆԴՈՒՐ...*

digitised by A.R.A.R.@